# ԱՄԵՆԻՑ ՇԱՏ ԴԵՂՁՆ ԵՄ ՍԻՐՈՒՄ

*ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ*

*Նկ. Ն. ՔՈԹԱՆՋՅԱՆԻ*

Ազնիվ խոսք, ինձ համար դեղձից համեղ միրգ աշխարհում չկա: Եթե միանգամից մի՛ կիլո, չէ, ինչ եմ ասում, երկու կիլո դեղձ տան, կուտեմ:

Բայց մայրիկս երբեք մի կիլո դեղձ միանգամից չի տալիս ինձ, այլ ամենաշատը երկու կամ երեք հատ:

—Փորդ կցավի,—ասում է նա,—հարկավոր է չափով ուտել:

Ես չեմ հասկանում, թե մայրիկը որտեղից գիտե իմ չափերը: Ախր, նրան ո՞վ է ասել, թե ես որքան դեղձ կարող եմ ուտել, թե քանի հատ դեղձը կարող է վնասել ինձ:

Հետո, կարո՞ղ է այդքան համեղ միրգը մարդու վնասել: Ուրիշ ժամանակ ինքն է ասում, թե միրգը օգտակար է, թե նրա մեջ վիտամիններ կան:

Իսկ հայրիկս դեղձ չի սիրում: Նա ասում է.

—Մարմինս փշաքաղվում է, երբ նայում եմ դեղձին: Մանավանդ, դրա կեղևը տանել չեմ կարողանում:

Այդ պատճառով էլ նա քիչ է ուտում դեղձ, այն էլ միմիայն կեղևած: Իսկ ես զարմանում եմ: Տարօրինակ է: Ախր ինձ ամենից ավելի հաճելի է, երբ կծում եմ դեղձը, և անմիջապես անուշ-անուշ հյութը լցվում է բերանս: Մի օր մինչև անգամ հայրիկի հետ վիճեցինք. դե՞ղձն է լավը, թե խաղողը:

Վերջը ես հաղթեցի: Հայրիկին դժվար է հաղթել, բայց ես հաղթեցի: Այ թե ինչպես եղավ:

Մի քանի օր առաջ հայրիկը շուկայից դեղձ էր բերել: Առաջին անգամն էր այս տարի դեղձ առել: Այնքան էլ լավ դեղձեր էին: Կարծես նկարից պոկված լինեին: Բայց ափսոս, որ քիչ էին: Ինձ միայն մեկ հատ հասավ: Բայց ինչ դեղձ էր, գիտե՞ք: Մեծ, մի թուշը կարմիր, իսկ մյուսը՝ դեղնավուն, այնքան էլ լավ հոտ ուներ: Ես անհամբեր սպասում էի, թե երբ պետք է ճաշը վերջացնենք, որ դեղձը ուտեմ, որովհետև երբեք ինձ չեն թողնում, որ ճաշից առաջ միրգ ուտեմ:

—Ախորժակդ կփակվի,—ասում են:

Վերջապես նստեցինք ճաշի: Բայց նոր էինք ճաշը վերջացրել, երբ մեկ էլ մեր դռան զանգը հնչեց:

Վազեցի բաց արեցի: Մարգո մորաքույրն էր, մեր հարևանուհին:

—Աստղիկ ջան,—ասաց նա մայրիկիս:—Ես մի կես ժամով շտապ տեղ եմ գնում: Քնարիկը չի՞ կարող երեխային նայել, տանը մարդ չկա:

Քնարիկն էլ ես եմ:

—Ինչո՞ւ չի կարող,—պատասխանեց մայրիկս:—Փոքրիկ հո չի՞, երրորդ դասարանի աշակերտ է:

—Ինչո՞ւ չեմ կարող,—անմիջապես ասացի ես:

Մայրիկս ասել է, երբ մեծերից մեկն ու մեկը մի բան է խնդրում, պապա պետք է պատրաստակամ լինել:

Եվ որպեսզի ցույց տամ, թե որքան պատրաստակամ եմ, նույնիսկ դեղձը չկերա, անմիջապես վազեցի:

Մարգո մորաքրոջ երեխան երկու տարեկան է, անունը Հրաչիկ ու շատ գիլ, բարձր ձայն ունի:

Երբ գնացի, հանգիստ քնած էր:

—Նա ամեն օր ճաշից հետո երկու ժամ քնում է,—ասաց Մարգո մորաքույրը:—Հենց նոր է քնել, այնպես որ, գուցե մինչև իմ գալը չարթնանա:

Ես հետս «Պիոներ» ամսագիր էի տարել: Սկսեցի նկարները նայել ու կարդալ: Բայց հենց որ Մարգո մորաքույրը գնաց, կարծես հակառակի նման Հրաչիկը քնից արթնացավ: Ազնիվ խոսք, ես այդպիսի տզզան երեխա չեմ տեսել: Հո շատ էլ փոքր

## ՈՍԿԵ ԱՇՈՒՆ

*ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԱՐԳԱՐՅԱՆ*

*Նորից զարկել է վրան*
*Մեր աշունը ոսկեծուփ:*
*Բոցկլտում են հուրհրան,*
*Ամեն մի ծառ, ամեն թուփ:*

*Եվ մեր թավիշ հանդերում,*
*Անտառներում ոսկեշող*
*Խոխոջում է ու երգում*
*Ջինջ վտակը մեղմօրոր:*

*Սաղարթներում ծանրաբեռ*
*Ոսկեջրած նուռ ու տանձ*
*Խշխշում են անհամբեր*
*Եվ ուզում են ընկնել ցած:*

*Բռնկվել է հուրհրան*
*Ամեն մի ծառ, ամեն թուփ,*
*Նորից զարկել է վրան*
*Մեր աշունը ոսկեծուփ:*

ՀՈԿՏԵՄԲԵՐ
№ 10 1960 Թ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
32-ՐԴ ՏԱՐԻ






ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

չի. երկու տարեկան է, բայց շարունակ տզզում է: Ես երկու տարեկան ժամանակ իսկի լաց չէի լինում: Մայրիկս է ասում: Հրաչիկը զարթնեց ու անմիջապես սկսեց լաց լինել:

—Ի՞նչ ես ուզում,—հարցնում եմ նրան:

Բայց նա չի պատասխանում ու շարունակում է լաց լինել:

—Ախր ի՞նչ ես ուզում, է՜...

Վերջի վերջո լաց լինելով, սկսեց ասել, թե՝ «Մամայիս եմ ուզում...»

Այ քեզ խաթա... Բա ես ի՞նչ անեմ: Ես նրան բացատրում եմ, որ մաման գնացել է, որ մի կես ժամից կգա, որ ես չեմ կարող նրա մամային բերել, բայց նա ոչինչ էլ չի ուզում հասկանալ ու հենց մի գլուխ լալիս է: Ամոթանք եմ տալիս, ուզում եմ նրա համար մի բան երգել, մեկ-մեկ խաղալիքները բերում եմ, տալիս, ոչինչ չի օգնում: Մինչև անգամ «Պիոների» նկարներն էլ չեն օգնում. և տե՛ս, թե ինչքան խորամանկն է: Լաց է լինում, բայց միաժամանակ նկարներին է նայում: Շարունակում է լաց լինել, իբր թե իսկի էլ պետքս չեն քո նկարները, բայց ես էլ հիմար չեմ. շատ լավ տեսնում եմ, որ աչքը նկարներից չի հեռացնում:

Ես այդպիսի տզզան երեխա կյանքումս չեմ տեսել:

«Հիմար երեխա»—մտածում եմ ես: Ախր փոխանակ ինձ համար հանգիստ դեղձ ուտելու, եկել եմ քեզ պահեմ: Իսկ դու փոխանակ շնորհակալ լինես, դեռ լաց ես լինում:

Բայց հենց որ դեղձը հիշեցի, իսկույն մի բան մտածեցի: Վազեցի մեր տուն, անմիջապես դեղձս վերցրի ու եկա:

Ցույց տվեցի դեղձը թե չէ, իսկույն լաց լինելը դադարեցրեց:

—Տե՛ս,—ասացի ես,—եթե ուզում ես, որ էս լավ դեղձը տամ քեզ, իսկույն վերջ տուր տզզոցիդ:

Այդ Հրաչիկը շատ հիմար ու տզզան երեխա է, բայց խորամանկ է, հա՜...

Իսկույն վերջ տվեց տզզոցին:

Դեղձը վերցրեց ու սկսեց ուտել: Էնպես էլ ախորժակով էր ուտում: «Երևի դուր է գալիս նրան» — մտածում եմ: Տզզան է, բայց լավ ճաշակ ունի:

Դեղձս կերավ-պրծավ ու էլ իսկի լա՛ց չեղավ:

Հետո էլ ասում ես, թե դեղձը լավ միրգ չէ: Ասենք՝ հայրիկս է ասում:

Երբ Մարգո մորաքույրը եկավ, գնացի տուն ու հայրիկին ասացի.

—Եթե քո հավանած խաղողը լիներ, ապա դըժվար թե Հրաչիկը լացին վերջ տար, տեսնում ես, ինչքան լավ միրգ է դեղձը:

—Այդ ինչի՞ մասին ես խոսում, չեմ հասկանում,—հարցրեց հայրիկը:

Ես նրան պատմեցի ամեն ինչ:

—Հիմա հավատում եմ,—ինձ լսելուց հետո ասաց հայրիկը,—որ դեղձը ամենալավ միրգն է: Աստղիկ, մի հատ էլ դեղձ տուր մեր Քնարին...

Մայրիկն ասաց, որ էլ դեղձ չկա: Ես բոլորովին էլ չտխրեցի, միայն թե մի քիչ անհանգիստ էի: Ախր դեղձը մի հատ էր, ճիշտ է, բայց շատ մեծն էր, իսկ Հրաչիկն ի՞նչ է որ, բոլորովին փոքրիկ է. այդքանը կարող էր նրան վնասել: Նա իր լացով այնքան էր շփոթեցրել, որ չմտածեցի կեսը տալ: Ամբողջը տվեցի: Հանկարծ կարող էր փորը ցավել:

Այ թե ինչպես եղավ, որ ես հայրիկին հաղթեցի:

# Ստալինյան պողոտա




Դ. ԽԱՆԲԵԿՅԱՆ

— Ա՜.ըլլահի.՜ի՜… —հնչում է մոլլայի ձայնը կապտագույն մզկիթի կողմից. Նա մուսուլմաններին աղոթքի է կանչում: Բակերում վերջին անգամ լուսաբացն են ավետում աքլորները, և մարդիկ արթնանում են: Գլուխները կապած պառավ կանայք շտապում են ջրի. ճանապարհին միմյանց բարևելով դեպի շուկա են ուղղվում մրգավաճառները, աշխատանքի են շտապում տղամարդիկ, փոշու ամպեր բարձրացնելով անցնում է նախիրն, ու հնչում է հովվի սրնգի ձայնը: Ցածրիկ, հողե տնակների կտուրներին կանգնած հարս ու աղջիկ սանրում են իրենց սև ծամերը, լսվում է երեխաների լացն ու ճիչը:

Այսպիսին էր օրվա առաջին տպավորությունը 1919—20 թվերին այնտեղ, ուր այժմ գտնվում է Ստալինյան պողոտան:

Այն ժամանակ այդ «փողոցը», որ կոչվում էր Արմյանսկի, ուներ 10 մետր լայնություն և այժմյան Սպանդարյան փողոցից սկիզբ առնելով, վերջանում էր Կարի գործարանի մոտ: Սպանդարյան փողոցից այն կողմ մրգատու այգիներն էին, որտեղ բացի պահակների փոքրիկ տնակներից, ուրիշ ոչ մի շինություն չկար: Փողոցի երկու կողմից ձգվում էին դեպի քաղաքի մյուս ծայրերը բազմաթիվ փոքր ու մեծ արահետներ, որոնք կարծես ոչ սկիզբ ունեին ու ոչ վերջ:

Փողոցի տեսքը շատ անշուք էր. Ցածրիկ հողե տներ՝ փոքրիկ լուսամուտներով, նեղլիկ բակեր՝ բարձր ցանկապատներով, անվերջանալի փոշի ու այս ու այն կողմ լցված աղբակույտեր, որտեղ առավոտից մինչև իրիկնամուտ քջուջ էին անում հավերը:

Փողոցի մի ծայրից մյուս ծայրն են հասնում կանանց ձայները: Դա Ռաֆայել բիձայի ջրի «բուդկայի» շուրջը հերթի կանգնած կանայք են աղմկում: Ռաֆայել բիձան անհիշելի ժամանակներից տիրացել էր փողոցի միակ ծորակին: Նազարովսկի (Ամիրյան) և Արմյանսկի փողոցների անկյունում մի փայտյա բուդկա էր կառուցել և ջուր էր վաճառում: Կժերի և պղնձյա դույլերի շարանին վերջ չկար: Կանայք այստեղ ժամեր էին անցկացնում, լսվում էր երեխաների լացն ու կոծը, վիճողների բարձր ձայները: Իսկ արցունքի պես կաթիլ-կաթիլ եկող ջուրը մի ժամում երկու հոգու հազիվ էր բավարարում: Փողոցի փոքրիկ բնակիչները՝ կժերը ձեռքներին, դես ու դեն էին վազվզում ու վրնգուն ձայներով կանչում. «Սառը ջու՜ր, սառը ջու՜ր...»

Դաշնի քուչայի (այժմ Մայիսյան) և Արմյանսկի փողոցների անկյունում վաճառում էին լավաշ, իսկ մնացած պարենը ձեռք էին բերվում մանավորների կրպակներում, որտեղ վաղ առավոտից մինչև ուշ երեկո, ճրագի լույսով առևտուր էին անում:

Կեսօրվա շոգին փողոցը ամայանում էր, միայն Ռաֆայելի «բուդկայի» մոտ էր, որ իրենց տեղերում էին մնում կժերն ու դույլերը:

Այդպես, անցնում էին տարիները, և երկար ժամանակ փողոցում ոչինչ չէր փոխվում:

* * *

Եվ ահա հնչեց ռևոլյուցիայի ազատարար փողը. Երևան մտան Կարմիր Բանակի մարտիկները: Փոխվեց մեր ժողովրդի կյանքը, մեր երկիրը սկսեց

կառուցվել և վերակառուցվել: Հետզհետե փոխեց իր դեմքը մեր մայրաքաղաքը, նոր կյանքի թարմ շունչը հասավ նաև Արմյանսկի փողոցին:

Մի արևոտ օր, երբ դեռ մարդիկ քնած էին, մուրճի, քլունգի ու բարձր խոսակցության ձայներ լսվեցին: Այդ «մոնտյորներն» էին, որոնք էլեկտրական լույսի սյուներ էին կանգնեցնում: 1927 թվականին ցածրիկ, հողե տնակների մութ պատուհանները լուսավորվեցին Իլյիչի լապտերներով: Հետո այնտեղ, ուր գտնվում էր Կոզմանի խղճուկ մատուռը, սկսվեց Օպերայի շենքի կառուցումը: Իսկ փողոցը վերանվանվեց Սունդուկյան:

Միաժամանակ կառուցվում էր Ծաղուղյանի անվան դպրոցը, որն ավարտվեց 1928 թ.: Այդ տարում էլ շահագործման հանձնվեց Իլյիչի բնակելի շենքը: Այժմ այդ շենքերի առաջ լայն և ասֆալտապատ պողոտա է, իսկ այն ժամանակ դրանք շրջապատված էին ծուռ ու մուռ արահետներով և այգիներով:

1932 թվականին, նախքան փողոցի ծառապատումն ու սալահատակումը, սկսվեց տրամվայի գծի կառուցումը: Դժվար է հիմա պատկերացնել միգծանի տրամվայ, բայց 1932 թվականին Ամիրյան փողոցի անկյունից մինչև Կարի գործարանի անկյունը տրամվայն անցնում էր միգծանի ռելսերով: Իսկ 1938 թվականին տրամվայն արդեն սլանում էր նաև Կարմիր Բանակի փողոցով, երկուգծանի ռելսերի վրայով:

... Եվ հիմա, ամեն երեկո, երբ փչում է երեկոյան զով քամին, ու խշխշում են ծառերի ստվերախիտ ճյուղերը, այստեղ զբոսնողներից շատերը հիշում են այդ օրերը և ճանաչում իրենց տնկած ծառերը:

Իրար հետևից դադարում են գոյություն ունենալ ցածրիկ, հողե տնակները, նրանց փոխարեն բարձրանում են 4-5 հարկանի բնակելի շենքեր: Փողոցը մի քանի տարվա ընթացքում երկարեց, հասավ մինչև այժմյան Մատենադարանի շենքը: 1938 թվականին փողոցը վերանվանվեց Ստալինյան պողոտա: Բացվեցին մեծ ու փոքր պարենային խանութներ, նպարավաճառանոցներ, կարի ու կոշիկի արհեստանոցներ, վարսավիրանոցներ:

1942 թ. ծավալվեցին այժմյան Բարեկամության փողոցի շինարարական աշխատանքները: Օպերայի այգին շրջապատվեց գեղեցիկ չուգունե ցանկապատով, կարգի բերվեցին հանգստի այգիները:

1960 թվականն էլ կմտնի փողոցի պատմության մեջ որպես մեծ փոփոխությունների տարի: 22 տարի շարունակ այստեղ լսվում էր տրամվայի անխոնջ զրնգոցը, այժմ պողոտայով անցնում են ծախուկ ու անաղմուկ տրոլեյբուսները: Պողոտայի երկու կողմից ձգվում են ծաղկանոցները, բարեկարգվում են հարևան փոքր ու մեծ փողոցները:

Շուտով մատենադարանի սքանչելի շենքի առջևում վեր կբարձրանա Մեսրոպ Մաշտոցի հուշարձանը:



Նկ. Ք. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ



# ԷԴՄՈՆԸ ԵՎ ՆՐԱ ՎԱԶՔՈՒՂԻՆ

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ

Էդմոն։

Տարօրինակ է, չէ՞։ Խուժան էր, հայ էր, բայց ղանթարում հայտնի էր Էդմոն անունով։

Իսկական անունը լսել չէր ուզում։ Բարձր ճաշակ ուներ, թեև չուներ կոշիկ, իսկ հագուստի փոխարեն մի ալյուրի պարկ ուներ և մի գոտի։ Բարձր ճաշակ ուներ, մինչդեռ այդ բանին անտեղյակ ծնողները տարիներ առաջ նրա անունը Բարեղամ էին դրել։ Էդմոնը ոչ մի կերպ չէր ուզում հաշտվել Բարեղամի հետ։ Որբանոցից փախչելուց առաջ կարդացել էր Ալեքսանդր Դյումայի «Կոմս Մոնթե-Քրիստոն», հափշտակվել էր, հուզվել, հավանել էր հերոսին, որը երկար տարիներ տառապել էր բանտում, հետո պատահաբար հսկայական հարստություն էր գտել, սկսել էր մեկ-մեկ պատժել իր երբեմնի թշնամիներին։ Խուժանը փոխ էր առել այդ հերոսի անունը, ազգանունը չէր հիշում, բայց նրան անունն էլ բավական էր։ Գրքից հիշում էր նաև մի ուրիշ անուն՝ Դանգլար։ Գրքում դա Էդմոնի թշնամին էր, և ինքն էլ իր բոլոր թշնամիներին այդ անունով էր կնքում։

— Մակիչին ծեծել ես, հա՞, գարշելի Դանգլար...

Այսպես ասում էր, երբ իր խմբով հարձակվում էր ղանթարում խանութի առաջ միամիտ կանգնած հացավաճառի վրա...

Նրա ջանքերով այդ անունը տարածում էր գտել. ոչ միայն խուժանները, այլև ղանթարի խանութպանները օգտագործում էին սովորական հայհոյանքների հետ հավասար։

— Մուշտարիս խլեցիր, էլի, շուն, շանորդի, Դանգլար,— ասում էր ժվժիկ վաճառողը մրժվժիկ վաճառողին, իսկ սա բարկանում էր.

— Տո, Դանգլարն էլ ես, հլա մի բան էլ ավելի...

Մազերը, երևի շեկ էին, այսինքն դժվար էր որոշել դրանց գույնը։ Դրանք երբեք չէին լվացվում, չէին սանրվում ու թաղիքե զորշ գլխարկի նման ծածկում էին գլուխը։ Դեմքը սովորական «խուժանային» դեմք էր. սոված, մեծ բերան, սև աչքեր, նիհար, ցցված քիթ, սուր-սուր ատամներ, որոնցով նա կարողանում էր փշրել «քարից փափուկ» ամեն բան։

Ոչ ոք Էդմոնին չէր բացատրել վազքի կանոնները, բայց ես մինչև հիմա էլ համոզված եմ, որ նա կարող էր վազքի չեմպիոն դառնալ։ Ասենք բոլոր խուժաններն էլ լավ էին վազում, բայց Էդմոնի նմանը չկար։

Էդմոնն ու նրա ընկերները վազքուղիներ չունեին, մրցության մեջ հաղթելու համար նրանց արծաթե գավաթ ու ոսկե կրծքանշան չէին տալիս, առջևում սպիտակ ժապավեն չկար, որ կրծքով կտրեր առաջինը։ Դրա փոխարեն, եթե նրանք վազում էին, նշանակում է հետևում ինչ-որ բան կար, շոշափելի, շարժուն, բարկացած, բարկությունից ճակնդեղի նման կարմրած, հայհոյող մի բան, մի խոսքով այն մրգավաճառը, որի խանութից մի րոպե առաջ խնձոր էին թռցրել։ Իսկ եթե խնձոր ես թռցրել, ու հետևում մի այդպիսի բարկացած խանութպան կա, պարզ է, կվազես ու ոչ մի չեմպիոն չի կարող քեզ հասնել... Մի բան էլ կա. այդպիսի վազքը իսկի էլ վազք չէր կոչվում, դա պարզապես կոչվում էր «ճղել»։





Էդմոնը քնում էր հին մեչիդի բակում, հենց այդտեղ էլ մի փոքրիկ բաղնիք կար։ Էդմոնի անկողինը ծառանն այդ բաղնիքի հնոցից հանած տաք մոխիրն էր, իսկ արևոտ եղանակներին նրան անկողին հարկավոր չէր։

Վաղ առավոտյան Էդմոնը մի պատառ հաց էր թռցնում, ուտում էր կատաղի արագությամբ, հետո կանգնում մեչիդի բակում ու «տանգ անում» մահմեդական հավատացյալներին մինարեից աղոթքի հրավիրող մոլլային, այնքան, մինչև նորից բարկացնում էր. դա մոլլայի միակ փրկությունն էր, Էդմոնը հեռանում էր նոր ուտելիք ճարելու՝ մոլլայի հասցեին նետելով իր զորավոր հայհոյանքը.

— Դանգլա՜ր…

Մեչիդը փողոցի ծայրին էր։ Այդտեղից փողոցի մյուս ծայրը չէր երևում։ Այդ ծայրը կորչում էր հեռու, Փահլավաքար կոչվող թաղամասի այգիների մեջ։ Փողոցը ծուռումուռ էր շրջակա բոլոր փողոցների նման, շատ տեղերում երկու սայլ չէին կարող իրար կողքով անցնել, բայց դա գլխավոր փողոց էր համարվում։ Այդ փողոց-առվակին գալիս միանում էին տասնյակ փողոց-առվակներ, որոնք կամ Կոնդից թարմ ցեխ էին բերում, կամ ցեխը տանում էին հարևան թաղամասերը։ Հենց այդ փողոց-առվակներն էին այն վազքուղիները, որոնցով սլանում էին խուժանները Էդմոնի գլխավորությամբ։ Կատաղի վազքի ժամանակ նրանք չփչփացնում էին փողոցի ցեխը ու անցորդներին «ներկում» ոտքից գլուխ։

— Գետինը մտնես, թիկունքդ կապտի,— լսվում էր որևէ զայրացած կնոջ անեծքը։

Իսկ նրանք քրքջում էին ու միաբերան ճչում.

— Դանգլա՜ր…

Էդմոնը կարճահասակ էր։ Բայց այդ փողոցում գրեթե երկարահասակ բան չկար։ Խանութպանները՝ կլոր-կարճահասակ, տները՝ ծռված-կարճահասակ, ցանկապատերը՝ փչփչուն-կարճահասակ, ծառերը՝ բակերում ճյուղած-կարճահասակ։ Երկարահասակ էին միայն… մեչիդի մինարեն ու մեկ էլ մոծակները, անսովոր, խոշոր մոծակները, որ գալիս էին ղանթարից կամ հարևան «անգլիական այգուց»։

Այդ փողոց-առուն մյուս փողոց-առուներից ավելի դժբախտ էր։ Ուրիշ փողոցների վրա մեկ էլ տեսար կավե պատերն ու փտած ցանկապատերն ընդմիջվեցին երկհարկանի սև շենքերով. մի տեղ «օրիորդաց գիմնազիայի» շենքն էր, մի տեղ «Աֆրիկովի տները», մի տեղ շողշողուն ցուցանակ կար. «Նորոգում եմ պրիմուս, Համբարձում Տեր-Ասլանյանից»… Իսկ մեչիդով սկսվող փողոցում միայն սանգակ հացի փուռեր կային, բայց դրանք էլ ցուցանակներ չունեին…

Այդպիսին էր փողոցը, Էդմոնի վազքուղին այն ժամանակ, երբ նա «ճղում» էր իր «թշնամուն»՝ չամիչ ծախող Բարսեղ-Դանգլարին «պատժելուց» հետո…



Պողոտան սկսվում է Մատենադարանի գրանիտե պալատից։ Երեկոյան, երբ նայում ես դեպի պալատը տանող լայն աստիճանների վրայից, պողոտայի կենտրոնով, բացված մեխակների շարքի նման ձգվում է աղոտ լույսերի երիզը։ Անծայր է պողոտան, լույսերի այդ երիզը կորչում է հեռու հորիզոնում։ Իսկ երկու կողմերում, սլացիկ շենքերի առաջ, պայծառ լույսերի մեջ օրորվում են կանաչ ծառերը… Մի տեղ քարա-

կափ ամրոցի նման ճանապարհ ու հպարտ նիգում է դյութական հնչյունների տաճարը, մի տեղ պողոտայի լուսե հենքի վրա բարև պատշգամբներ է կախել հինգ նոր կառուցված տուֆակերտ ապարանքը... Փոխվել է փողոցը, բայց, տարօրինակ է՝ փոխվել են նաև մարդիկ։ Այդ պողոտայում կարճահասակ ոչինչ չկա, ոչ խանութպաններ՝ կլոր-կարճահասակ, ոչ խրճիթներ՝ ծռված-կարճահասակ, ոչ ցանկապատներ՝ փշփշոտ-կարճահասակ... Հիմա խեղճ ու կարճահասակ է թվում միայն հին մեչիդի մինարեն, որ դժգոհ է իր հարևանից, փակ շուկայից, ուր առավոտից երեկո եռում, եփվում է մի զվարթ աղմուկ... Այդ շուկայում այլևս ոչ մի խուժան չկա, խուժան՝ սոված մեծ բերանով, սոված սև աչքերով, ցցված քթով ու ամեն ինչ փչրելու պատրաստ սուր-սուր ատամներով։

Անցել է քառասուն տարի։ Իմ ընկեր Էդմոնի վագրուղին փոխվել է, և պայծառ լույսերի մեջ լուծվել, անհետացել է իմ ու Էդմոնի տխուր մանկությունը...

... Կանգնել եմ մայթի վրա։ Տրոլեյբուսի կանգառի մոտ մի խումբ բանվորներ հղկած գրանիտե սյուն են կանգնեցնում։ Մայթի վրա ինձ նման կանգնում են զբոսանքի ելած քաղաքացիներ, նայում բանվորների աշխատանքին...

Միտքս թռչում է ետ, մտովի տեսնում եմ մեր գավառական կավե քաղաքի ծուռտիկ փողոցները ու հիշում եմ Էդմոնին՝ մեր վագրի չեմպիոնին, որին, համենայնդեպս, բռնեցին ու, խռիվ մազերը խուզելով, տարան... մանկական գաղութ...

Այդ օրից կորցրինք իրար։ Օրը օրին տարիներն անցան, աստիճանաբար ցամաքեցին, չքացան ցեխի փողոց-առուները, դրանց տեղերում ահա այս լուսե պողոտաները բացվեցին։

Կանգնել, հմայված նայում եմ բանվորների աշխատանքին։ Հանկարծ մի մարդատար մեքենա սուրում է նրանց մոտով, ուղղակի նրանց քովեյով։ Վարորդը քիթը հանում է լուսամուտից ու իր «քաջության» հիացած հռհռում։ Բանվորներից մեկը բարձրացնում է գլուխը ու զայրացած նետում.

— Դանգ-լա՛ր...

— Էդմո՛ն...

Զարմացած մարդկանց առաջ ես գրկում եմ նրան, իսկ նա ժպտում է շվարած.

— Ներեցե՛ք, բայց...

Բայց ես արդեն համբուրում եմ նրա մազոտ երեսը, կոկորդս սեղմվում է, աչքերիս առաջ պեծպեծին են տալիս արցունքիս մեջ բեկված լույսերը։

— Էդմո՜ն, ախպեր ջա՜ն...

* * *

Գ. Ս.՛։

Խնդրեմ, ծանոթացե՛ք։ Այս լուսավոր պողոտայի կառուցողներից մեկը. քարտաշ-վարպետ Բարեղամ Խոյեցյան...



ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

# Սոնա տատի նվերը



Լավն է տատը մեր Քնարի,
Սիրալիր է և հոգատար,
Աշխատասեր, հեզ ու բարի,
Ոչ քուն ունի ու ոչ՝ դադար։
Խնայող է և ուշադիր,
Ափսոսում է ամեն բանի,
Եվ հասարակ ամեն մի իր
Նրա աչքում մեծ գին ունի։
«Հացը ձեռքից ցած մի՛ գցիր,
Մեղք է,—կասի,—լավ իմացիր,
Հո հեշտությամբ տուն չի եկել,
Ծով քրտինք են մարդիկ թափել»։
Հին, փչացած ապրանքն էլ միշտ
Նա սրբությամբ կպահպանի,
Ա՛յ, նկուղը նման է ճիշտ
Մի պատմական թանգարանի։
Այնտեղ բազմած կտեսնեք դուք
Պապենական մի հին սնդուկ.
Նրա միջին տատը ունի
Հիշատակներ հնամենի։
Իսկ քիչ այն կողմ ինչե՛ր չկան.
Է՛լ հին գութան, խոփ ու ցաքան,
Է՛լ անատամ, մաշված սղոց,
Է՛լ ժանգոտած մուրճ ու խարտոց,
Է՛լ կոտրված կացին, ուրագ,
Կավե կճուճ, նավթի ճրագ,
Ակ ու սանի, մանգաղ ու բահ,
Արկի բեկոր, թուր ու զրահ...
Եվ տխրում էր տատը հաճախ
Ու ինքն իրեն ասում. «Ավա՛ղ,
Ջուր պահեցի դրանք այդքան,
Ոչ մի բանի պետք էլ չեկան...»
Բայց. ա՛յ թե ինչ... Քնարը մեր
Տուն մտավ ու... — Մի եկ, տատի,
Նստիր կողքիս, որ քեզ պատմեմ
Որոշումը մեր ջոկատի...
Որոշել ենք գյուղում ինչքան
Հին երկաթե գործիքներ կան,
Հավաքենք մենք ամսի հինգին
Ու նվիրենք Հայրենիքին,
Որ քաղաքում շինեն նոր-նոր
Խոփ, շարքացան ու տրակտոր։
Իսկ հին մետաղ շատ կա գյուղում,
Ու, մանավանդ, մեր նկուղում...
Վախենում էր Քնարիկը,
Որ բարկանա իր տատիկը,
Բայց նա իսկի չբարկացավ,
Նույնիսկ ժպտաց, ուրախացավ...
Ու գրկելով իր թոռանը,
Պինդ համբուրեց Սոնա տատին.
— Ասա, ասա, թող գան տանեն,
Մատաղ լինեմ քո ջոկատին։



Նկ. Լ. ՄԵԼԻՔՅԱՆԻ

# 40



Սովետական Միության պատանի պիոներնե՛ր,

1962 թվականի մայիսի 19-ին լրանում է Վլադիմիր Իլյիչ Լենինի անվան Համամիութենական պիոներական կազմակերպության 40 տարին:

Չորս տասնամյակ իր ավագ եղբոր՝ կոմերիտմիության հետ միասին, մեր հարազատ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ընթանում է սովետական պիոներիան:

Չորս տասնամյակ շարունակ երկրում հնչում են պիոներական զիլ շեփորները, բոլորին, ովքեր կրում են կարմիր փողկապներ, կանչելով մեծ գործերի ի փառս սիրելի Հայրենիքի:

Պիոներական կազմակերպության 40-ամյակը պատանի լենինյանների պայծառ և բերկրալի տոնն է, մեր ամբողջ ժողովրդի տոնը: Հարյուր միլիոնից ավելի սովետական մարդիկ պիոներական ջոկատներում են անցել կոմունիստական կոփման առաջին դպրոցը: Այսօր նրանք արդյունահանում են ածուխ և հանքաքար, կառուցում հիդրոէլեկտրակայաններ և տներ, նվաճում խոպանը և տիեզերքը, աչալրջորեն պահպանում մեր սահմանները: Եվ նրանցից յուրաքանչյուրը հավատարիմ է առաջին երդմանը, որ նա պիոներական տողանում տվել է իր ընկերների առջև. ապրել, սովորել, պայքարել այնպես, ինչպես ավանդել է մեծ Լենինը, ինչպես սովորեցնում է Կոմունիստական պարտիան:

Պարտիայի հետ միասին, ժողովրդի հետ միասին. այս խոսքերը դարձել են պատանի լենինյանների բոլոր սերունդների մարտակոչը:

Ե՛վ խաղաղ օրերին, և՛ Հայրենական պատերազմի դաժան տարիներին պիոներները եղել են մեծահասակների, կոմունիստների և կոմերիտականների հավատարիմ օգնականները: Մեր Հայրենիքի պատմության մեջ ոսկե տառերով են գրված նրանց հերոսական սխրագործությունները: Հերոս պիոներների անուններով կոչված են փողոցներ, դրուժինաներ, դպրոցներ: Նրանց համար կառուցված են հուշարձաններ:

Բազմապատկեցե՛ք պիոներիայի փառապանծ տրադիցիաները: Գրեցե՛ք ձեր ջոկատի, դրուժինայի, դպրոցի պատմությունը: Ստեղծե՛նք Համամիութենական պիոներական կազմակերպության տարեգրությունը՝ պատանի լենինյանների գործերի և սխրանքների վառ պատմությունը:

Աշխարհում մեզ համար ավելի թանկ անուն չկա, քան Լենինի անունը: Այս անունը հպարտությամբ է կրում Համամիութենական պիոներական կազմա-

# Սովետական ՄԻՈՒԹՅԱՆ պիոներներին

կերպությունը: Ուսումնասիրեցե՛ք Իլյիչի սքանչելի կյանքը, իմացե՛ք, թե ինչպես սովետական ժողովրդի ստեղծագործ աշխատանքով, Կոմունիստական պարտիայի իմաստուն առաջնորդությամբ կենսագործվում են նրա պատգամները: Յուրաքանչյուր դպրոցում ստեղծեցե՛ք լենինյան թանգարաններ, սրահներ, սենյակներ, անկյուններ, ցուցահանդեսներ:

Հավատարիմ եղե՛ք Լենինի պատգամներին: Անդուլ կերպով տիրապետեցե՛ք գիտելիքներին: Թող օրեցօր աճե՛ն ձեր հաջողությունները ուսման մեջ: Ջանացե՛ք, որ ջոկատներում ոչ մի երկսերեցի չլինի, որ ձեր ընկերներից ոչ մեկը դպրոցից դուրս չմնա:

Այսօր արդեն ձեր ոչ թե հազարավոր, այլ միլիոնավոր քաջարի, համարձակ և անձնվեր հասակակիցներ պիոներական կազմակերպությունների շարքերում մեծահասակներին օգնում են աշխատանքում և պայքարում: Ամրապնդեցե՛ք եղբայրական ռեսպուբլիկաների պիոներների, աշխարհի բոլոր երեխաների բարեկամությունը:

«Միայն բանվորների և գյուղացիների հետ միասին աշխատելով կարելի է դառնալ իսկական կոմունիստ» — ավանդել է Վլադիմիր Իլյիչը:

Ի նշանավորումն 40-ամյա հոբելյանի, Համամիութենական պիոներական կազմակերպության Կենտրոնական խորհուրդը հայտարարում է պիոներական երկամյակ՝ «Պիոներները՝ հայրենիքին»:

Առաջիկայում անելիքներ շատ կան:

Հավաքենք մեկ միլիոն տոննա մետաղի լոմ «բարեկամության կառույցի»՝ Վոլգա-Կենտրոնական Եվրոպա նավթամուղի համար, որը Սովետական Միությունը կմիացնի սոցիալիստական լագերի երկրների հետ, յոթնամյակի կոմերիտական հարվածային կառույցների համար:

Օգնենք գյուղի կոմերիտականներին կատարելու ստանձնած պարտավորությունները: Անեցնենք 10 միլիոն ճագար, 100 միլիոն թռչուն:

Խնուղիները և ավտոմագիստրալները դարձնենք ծաղկուն, կանաչ ծառուղիներ: Հիմնեցե՛ք այգիներ, հատապտղանոցներ, խաղողի այգիներ, դպրոցների շուրջը ստեղծեցե՛ք կանաչ ցանկապատեր, ծաղկանոցներ:

Հերոս քաղաք Սևաստոպոլի կոմերիտականների օրինակով արշավի դուրս եկեք փողոցի, դպրոցի, տան օրինակելի մաքրության և կարգ ու կանոնի համար:

Դուք տոնի առթիվ կարող եք պատրաստել հետաքրքրական շատ սարքեր, մոդելներ, մեքենաներ, մանելով «Պատանի տեխնիկները՝ Հայրենիքին» համամիութենական մրցանակաբաշխության մեջ:

Եղե՛ք ճարպիկ, ուժեղ, համարձակ: Ջանացեք, որ յուրաքանչյուր պիոներ դառնա սպորտսմեն: Կառուցեցե՛ք սպորտային հրապարակներ և սահադաշտեր: Պիոներական տոնը դիմավորեցե՛ք վազքուղում, կանաչ դաշտում, ջրում ձեռք բերած նոր հաղթանակներով:

Բարեկամ եղեք պիոներական խանդավառ երգին: Յուրաքանչյուր դպրոցում բացեք ձեր թատրոնները, կինոստուդիաները, ստեղծեցեք անսամբլներ, երգչախմբեր և նվագախմբեր:

Ակտիվիստ պիոներնե՛ր: Երրորդ սասիճանի պիոներնե՛ր: Հրահանգիչ պիոներնե՛ր: Շատ բան ձեզանից կախված կլինի: Եղեք ջոկատներում և դրուժինաներում, գրավիչ և օգտակար նոր գործերի նախաձեռնողներ, ամեն ինչում երևան բերեցեք ձեռներեցություն և նախաձեռնություն: Ավե՛լի շատ հնարանք, հնարամտություն, երևակայություն:

Պատանի լենինյանե՛ր:

Տոնին պատրաստվեցեք ջերմորեն, նվիրված, պիոներաբար:

Ակտիվորեն մտե՛ք «յոթնամյակի արբանյակ ջոկատ, դրուժինա», շրջանի, մարզի, երկրամասի, ռեսպուբլիկայի լավագույն դրուժինա կոչվելու իրավունքի համար ծավալված մրցության մեջ: Ամրապնդեցե՛ք բարեկամությունը կոմունիստական աշխատանքի բրիգադների, հարվածայինների հետ: Դուք շատ բարեկամներ ունեք: Ավագ ջոկատավարները, ուսուցիչները, բանվորները, կոլտնտեսականները, գիտնականները, գրողները, արտիստները կլինեն ձեր հավատարիմ օգնականները և խորհրդատուները:

Հոկտեմբերի 2-ին, ՌԿԵՄ 3-րդ Համառուսաստանյան համագումարում երիտասարդության կոմունիստական դաստիարակության ծրագրով Վլադիմիր Իլյիչ Լենինի պատմական ելույթի 40-ամյակի օրը, դուրս եկեք պիոներական երկամյակի՝ «Պիոներները՝ Հայրենիքին» ստարտին:

Թող ավելի պայծառ վառվեն պիոներական խարույկները: Թող ավելի գիլ հնչեն պիոներական շեփորները: Թող ամբողջ երկրում ծավալվեն կանծալի այն գործերի լուրերը, որոնցով պիոներները դիմավորում են իրենց քառասնամյակը:

Պատանի պիոներնե՛ր:

Մենք մեր քառասնամյակը կտոնենք կոմունիզմի արշալույսին: Ուրեմն արժանի եղեք այդ մեծ ժամանակին: Պայքարեցե՛ք Իլյիչի պատգամներին հավատարիմ լինելու մասին Հայրենիքին, պարտիային, կոմերիտմիությանը զեկույց տալու իրավունքի համար:

Եղեք պատրաստ Կոմունիստական պարտիայի գործի պայքարին:

Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԽՈՐՀՈՒՐԴ

# ՀԵԾԱՆԻՎԸ

ՎԱՆՅԱ ՍԱՆԹՐՅԱՆ

Մեր պատշգամբը փողոցի վրա էր։ Փողոցը լայն էր, ասֆալտապատ և մեր պատշգամբի ապակիների պես փայլում էր ամեն առավոտ։ Թե ինչու էր առավոտյան փայլում, շատերը կիմանան. ջրում էին։ Իսկ ջրելուց հետո փողոցի հետ օդն էլ էր մաքրվում, սառնանում՝ նույնիսկ ամառվա շոգ եղանակին։ Մեր փողոցով միայն ավտոներ էին անցնում։ Տրամվայի աղմուկը հեռու էր, կարելի էր և հեծանիվ քշել։ Ես հեծանիվ շատ էի սիրում։ Հայրս վաղուց մի հեծանիվ էր գնել, որն արդեն հնացել էր։ Էլ ի՞նչ հեծանիվ, որ երեք անիվ ունի։ Շատ էր մանկական։ Ես այնպիսի հեծանիվ էի ուզում, ինչպիսին իմ ընկեր Սահակն ուներ։ Նա ինձնից ընդամենը երկու տարով էր մեծ։ Ու միշտ ծաղրում էր։

— Գևորգ, քո «Մոսկվիչը» վերցրու, մրցենք։

Նա հաճախ իր հեծանիվով փողոց էր դուրս գալիս ու մեր պատշգամբի տակով անցնելիս բղավում.

— Հե՜յ, Գևորգ, ինչո՞ւ «Մոսկվիչդ» չես քշում

Երբ փողոց էի դուրս գալիս ու խնդրում, որ իր հեծանիվը ինձ էլ տա քշեմ, չէր տալիս։

— Կընկնես, քիթդ կփշրես, առայժմ քո եռոտանու վրա վարժվիր։

Կամ էլ ասում էր.

— Դեռ շատ հաց ու պանիր պիտի ուտես, որ հեծանիվ քշել սովորես։

Առաջ կարծում էի, թե ճիշտ էր ասում, ու ամեն օր հաց ու պանիր էի ուտում։ Բայց չգիտեի, քշել կարո՞ղ եմ, թե՞ ոչ։ Հեծանիվ չունեի, որտեղի՞ց իմանայի։

— Հայրիկ, ի՞նչ կլինի, որ ինձ հեծանիվ գնես,— հաճախ դիմում էի հորս,— շատ եմ հաց ու պանիր կերել։

— Ի՞նչ հաց ու պանիր։

— Բա՛ Սահակն ասում է՝ դեռ շատ հաց ու պանիր պիտի ուտես, որ հեծանիվ քշես։

— Ոչինչ, կգնեմ բալիկ ջան,— հանգստացնում էր հայրս,— երբ մեծանաս, անպայման կգնեմ։

— Ախր արդեն մեծ եմ,— ասում էի ես, ոտքերիս ծայրերով կանգնում կլոր սեղանի կողքին,— տե՛ս, սեղանը ինձնից ինչքա՞ն կարճ է։

Հայրս միշտ ծիծաղում էր։ Վերջապես մի օր խոստացավ անպայման գնել։

Այդ օրը ես լաց էի եղել, որովհետև իմ «Մոսկվիչը» քշելիս Սահակից հետ էի մնացել, իսկ նա ծտի պես թռել էր առաջ ու ծաղրել։

— Գևորգ, դու էլ ասում ես՝ տղամարդ եմ։ Մի կարգին հեծանիվ էլ չունես։ Էդ եռոտանին ինչի՞ ես պահում։

Լուռ լաց եղա։ Բերեցի հեծանիվը գցեցի ներքնատուն, ոտքով էլ պինդ քացի տվեցի ու նստեցի սանդուղքներին։ Սպասում էի հորս։ Նա եկավ ու ինձ այդպես էլ տեսավ։

— Հը՞, Գևորգ ջան, ո՞վ է քեզ նեղացրել։

— Դու,— դարձա ես դեպի նա ու լացակումած վրա տվեցի,— ո՞ւր է հեծանիվը... Արցունքներս դարձյալ հոսեցին։ Արդեն բարձրաձայն լալիս էի, ոտքերով գետինը դոփում, քիթս վեր քաշում ու բղավում.





Նկ. Հ. ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

— Ու՞ր է հեծանիվը, հը՞, ու՞ր է...

— Գևորգ ջան, լաց մի լինի, գիտե՞ս ինչ, ֆուտբոլ է։ Քառորդ ֆինալ։

— Չեմ գա։

— Ինչու՞։

— Հեծանիվն տուր, գամ։

— Հա՞, հեծանի՞վը,— հարցրեց հայրս։ Ապա մի վայրկյան մտածելուց հետո ավելացրեց,— լավ, առանց այն էլ կգնեմ, բայց այժմ պայման եմ դնում։ Եթե մերոնք տանեն, գնում ենք ունիվերմագ։ Հանդիսավո՛ր խոսք եմ տալիս։

Ես փաթաթվեցի հորս՝ ուրախությունից։ Էլ չէի լալիս։ Ես գիտեի, որ «հանդիսավոր»-ից հետո հայրս իր խոսքի տերն էր։ Այնպես կքշեմ, այնպես կքշեմ հեծանիվս, որ Սահակը հարյուր կիլոմետր ետ մնա։ Օ՜, ինչ հեծանիվ էր լինելու, ի՜նչ հեծանիվ։ Բոլորովին նոր անվադողեր՝ մաքուր մաքրած։ Զանգը այնպես կհնչի, որ Սահակի ականջները խլանան։ Դողերի լարերին կարմիր շոր կփաթաթեմ, զանգի կողքին կարմիր դրոշակ կամրացնեմ։ Դե՛, Սահակ, տղա ես դուրս արի քո քոսոտ հեծանիվով, որ ամեն օր թամբը աջ ու ձախ է ծռվում, զանգը ձայն չի հանում, որ անիվները ճռճռում են նավթավաճառի հին ֆուրգոնի նման, որ... Սպասիր, Սահակ, ես քեզ ցույց կտամ։ Տեսնենք, ո՞ւմ քիթը կփշրվի։ Հիմա հաց ու պանիրը դու շատ կուտես, որ ինձ հասնես։ Իմ հեծանիվը բազեի պես կթռչի, իսկ քոնը կուչ կգա, ոնց որ հավը։

Թվում էր, թե ստադիոնում չկար մեկ ուրիշը, որն ինձանից ավելի շատ հուզվեր։ Չէ՞ որ մերոնց հաղթանակից էր կախված իմ հեծանվի բախտը։

Հյուրերը լավ էին խաղում։ Քիչ մնաց կենտրոնական հարձակվողը մեկ գնդակ անց կացներ։ Մեր դարպասապահը ուղղակի կատվի նման բռնեց։ Ես արդեն կորցրել էի հույսս։ Մերոնք այնքան դանդաղ էին խաղում, շատ դանդաղ, կրիա-



յի պես։ Բավական էր միայն մեկ գնդակ, և մընաս բարով, հեծանիվ։

— Հայրիկ, իսկ եթե ոչ-ոքի լինի՞։

— Ինչը՞,— անուշադիր հարցրեց հայրս։

— Հեծանիվը...

Նա այնպես նայեց ինձ, որ խոսելն ավելորդ էր։

Սկսվեց ու մտքումս խոսում էի. «Ախ, ինչ կլիներ, մերոնք մեկ գնդակ խփեին, գոնե մեկը։ Հայրս կուրախանա, հեծանիվը կստանամ, Սահակը չի ծիծաղի»։

Այսպես մտածում էի, մեկ էլ ներքևի նստարանից լսվեց՝

— Հե՜յ, Գևորգ, «Մոսկվիչդ» ինչի՞ չես բերել։

Սահակն էր։ Կատաղեցի։ Լավ էր, հայրս չլսեց, թե չէ կասեր, ու Սահակի ականջներից պինդ կքաշեր։ Ես բարկացած նայեցի Սահակին ու լեզուս հանեցի։ Նա ինձ բռունցք ցույց տվեց, ու... դաշտում սկսվեց երկրորդ խաղակեսը։ Այս անգամ արդեն մերոնք էին հարձակվում։ Բայց ոչ մի արդյունք։ Ճակերը ծանծրացած դուրս էին գնում։ Գոնգ։ Մնացել էր ընդամենը հինգ րոպե. հեծանիվս կորա՜վ։ Նայում եմ Սահակի թիկունքին, մտաբերում նրա ծաղրական խոսքերը։ Հարված, դարձյալ հարված... և հյուրերի պաշտպանը գնդակը անց է կացնում... սեփական դարպասով։ Հաշիվը դառնում է 1:0՝ հօգուտ մերոնց։ Այդ ինչ հաղթանակ էր որ։

Ճիշտ է, ուրախացավ հայրս՝ նույնպես, Սահակն էլ, բայց էժան հեծանիվ էր։ Երբ Սահակը ուրախացած ինձ նայեց, որ կարծես բղավեր, թե՝ այսօր հեծանիվս կտամ, էլ չեմ չարախնդա, ես կրըկին լեզուս ցույց տվեցի։ Արդեն հեծանիվ ունեմ։

Մենք դուրս եկանք ու տարբեր նստեցինք։ Հայրըս ասաց՝ Ունիվերմագի ճանապարհին հանդիպեցի Սահակին։ Ոտքով էր։ Մերենայի պատուհանից լեզուս ցույց տվեցի։

Հաջորդ օրը նոր հեծանիվը հանեցի պատշգամբ ու սպասում էի։ Սահակը չկար։ Սպասեցի մեկ օր՝ չկար, երկու օր՝ չկար։ «Երևի իմացել է, որ հեծանիվ ունեմ, դրա համար չի երևում»— անցավ մտքովս։

Երբ մեր պատշգամբի տակ երևաց Գուրգը, կանչեցի.

— Գուրգ, Սահակն ու՞ր է։

— Մերենայի տակ է ընկել։

— Ի՞նչ...

Հեծանիվս այնքա՜ն փորրացավ աչքիս, և թըվաց, թե ես եմ մեղավորը։ Եթե հեծանիվ չգնեի, նա վթարի չէր ենթարկվի։ Սուսուփուս հեծանիվը քաշեցի ներս ու վազեցի Սահակենց տուն։ Սահակի մայրը՝ Արմիկ մորաքույրը վշտահար կանգնել էր դռան մոտ։ Բժիշկը նոր էր գնացել։

— Արմի՛կ մորաքույր, Սահակն ինչպե՞ս է։

— Լա՛վ է, նե՛րս մտիր։

Սահակը կորել էր անկողնում։ Գլուխը փաթաթված էր, գույնը՝ դեղին, դեղին։ Ինձ տեսնելով թույլ ժպտաց։ Ես լուռ նստեցի աթոռին։

— Ոչինչ, կանցնի, շատ չեմ վնասվել,— հազիվ խոսեց Սահակը,— բայց հեծանիվս, ափսոս...

Սահակի հեծանիվը բոլորովին փչացել էր, այլևս քշել չէր լինի։ Կամենում էի խայթել, ասել, որ նոր հեծանիվ ունեմ։ Մեղքս եկավ։

— Գիտե՞ս ինչ, Սահակ ջան, դու առողջացիր, հայրիկս ինձ լավ հեծանիվ է գնել, միասին կըքշենք։

— Չէ՛, չի՛ լինի,

— Ինչո՞ւ, Սահակ։

— Ես քեզ շատ եմ ծաղրել, ես քո հեծանիվը չեմ նստի։

— Էդ հեչ, անցած բան է,— ասացի ես,— քա էլ ի՞նչ տղամարդ ենք, որ անցածի մասին հիշենք, դու միայն լավացիր։

Ես ամեն օր այցելում էի Սահակին։ Երբ նա կազդուրվեց, նոր միայն ասացի, որ հեծանիվ ունեմ։

Սահակն ինձ սովորեցրեց հեծանիվ վարել։

Հետագայում, երբ իրար հանդիպում էինք, բարեկամ կրկնում էինք. էլ ի՞նչ տղամարդ ենք, որ անցածի մասին հիշենք...

Ու միասին հեծանիվ էինք քշում...

(տես՝ էջ 14)



Նկ. Հ. ՏԵՐ-ՂԱԶԱՐՅԱՆԻ




*ԱՐՏԱՎԱԶԴ ՀՈՎԱԿԻՄՅԱՆ*

*Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ*

— Իմն է այս երկու մարգը։

— Սրանք էլ իմն են։

— Որևէ մեկն իրավունք չունի մտնել այստեղ, ես ամենից առաջ տեղ հասա։

Աշխատանքային օրն սկսված էր։ Կիմսն, Արտոն և Սեթը այս անգամ էլ կարողացան բոլորից լավ մարգերն ընտրել, որոնցում Հայկի կարծիքով ավելի շատ բամբակ կար, իսկ ինքը կրկին մնաց մի քանի «քոսոտ» մարգերի առջև։

— Այստեղ իսկի բամբակ էլ չկա,—կես լացակումած մրթմրթաց նա և կամեցավ կռվել նրանց հետ։

— Պարզ է, որ այսպիսի մարգերում ես ամենաքիչը կհավաքեմ ու կլինեմ վերջինը։

Հայկը կրկին նայեց նրանց մարգերին, տեսավ, որ դրանց կնգուղներն ավելի փարթամ են բացված։ Գուցե այդպես թվաց նրան, և նա համոզվեց, որ ընկերները չար են տրամադրված իր նկատմամբ։

«Լավ,—հուսահատությունից մխիթարեց ինքն իրեն,—ես նրանց ցույց կտամ, թե ով է ամենից շատ բամբակ հավաքողը»։

Ամեն անգամ, երբ ավտոմեքենան կանգ էր առնում ճամփեզրին, Կիմսն, Արտոն և Սեթը իրենց դասարանցիներից շուտ էին իջնում ու վազում բամբակի դաշտ, իսկ Հայկը միշտ մի չարաբաստիկ բանի պատճառով ետ էր մնում. կամ գայթում էր հողաթմբերին, կամ ավտոմեքենայից շուտ չէր կարողանում իջնել ու երբեմն էլ դաշտ հասնելով, ճիշտ չէր կողմնորոշվում, թե մարգերից որն է ամենալավը։ Պարզ է, որ հենց օրվա սկզբից էլ նրա տրամադրությունն ընկած էր լինում, և նա աշխատելու ցանկություն չէր ունենում, ինչ վերաբերում է շատ հավաքելու՞ն...

«Լավ, լավ, թող այս անգամ էլ նրանք իրենց ցանկացածն ընտրեն»—նա ամեն կերպ կամենում էր մխիթարել իրեն։

Եղավ մի պահ, որ Հայկը ցանկացավ ճչալ, լաց լինել, կամ պարզապես թողնել աշխատանքն ու փախչել, հեռանալ նրանց մոտից, իսկ դպրոցում էլ ընկերություն չանել։ Բայց ինչ-որ մի պատճառով նա վճռականորեն չէր անում այդպես։

Հանկարծ նա ցատկեց տեղից ու վազեց դեպի Արտոն։

— Այս մարգն ի՛մն է։

— Քոնը միայն դրանք են,—հանգիստ մատնացույց արեց Արտոն, արդեն սկսելով բամբակ հավաքելը։

— Ո՛չ, սա ի՛մն է,—ճչաց Հայկը,—դրանք ինքդ կարող ես քաղել։

Եվ նրանք հրհրում էին իրար։

— Հայկ,—ձայնեց Կիմսն, որի գոգնոցն արդեն գոտկատեղից կախ էր ընկել բամբակով տոգած,—եկ իմ մարգերում դու հավաքիր։

Հայկն աչքի տակով նայեց նրան։

— Պա՛հ, ինչի՞ս է պետք, մարգն արդեն կես ես արել։

Կիմսն, Սեթը և Արտոն քրքջացին, իսկ Հայկի գլխում մի միտք ծագեց. «Մարգը մարգ է, է՛լի, իմը նրանցից ինչո՞վ է պակաս»։

Բայց նա չարացած էր Արտոյի դեմ։

— Նախա՛նձ։

— Ի՛նքդ ես։

Հայկը խակ կնգուղով խփեց նրա գլխին ու փախավ։

Աշխատանքային եռուզեռն ընթանում էր, բայց Հայկն այժմ նստած տնկիների ստվերում մի տեսակ ընկղմված էր անորոշության մեջ։ Գիշերն անձրևած գետնից ու տերևախիտ տնկիներից փչում էր խոնավություն, որն ասես հաճելի էր դարձնում կապտավուն երկնքին նայելը, սպիտակ ամպերի հսկայական դեզերը նման էին բամբակի դեզերին։ Եվ հանկարծ նա իր մեջ մի արտասովոր եռանդ զգաց, գոտեպնդվեց աշխատելու ու միշտ առաջինը լինելու տենչով, միայն թե մի փոքր վընռականություն ունենա ոստնելու տեղից։ Հայկը կարողացավ հաղթահարել դա։ Նրա առջև փռվեցին հսկայական դաշտավայրով ձգված տնկաստանները, որոնցից այն կողմ գետն էր ու մշուշի միջից երևացող քաղաքը։ Նա՛ տնկաստաններում տեսավ իրենց դասարանցիներին, այլ դասարանցիների և տարեց ջանաքավորների, ապա նկատեց Սեթին, Արտոյին, Կիմային։

«Կիման լավ աղջիկ է, — ասաց նա ինքն իրեն, — նա իր մարգերը զիջեց ինձ»։

Բայց Արտոյի նկատմամբ էլ նա հիմա այնքան քեն չուներ, նա միայն մեղադրում էր հենց իրեն, որ ամեն կերպ էլ քիչ է հավաքում ու միշտ լինում է վերջինը։

Նա գոգնոցն ամրացրեց գոտկատեղում, խորացավ, խրվեց մարգերի մեջ։

Արևն արդեն բարձրացել էր և ահավոր ծուլություն էր սփռում դաշտերի վրա։ Հայկը մի քանի անգամ գոգնոցն արդեն դատարկել էր ու հիմա գտնվում էր մարգի առջևում։ Նա շատ արագությամբ քաղում էր բամբակը կնգուղներից, առանց իրեն հաշիվ տալու, գոգնոցը պինդկոխ էր անում, առաջանում, առաջանում էր։ Մի քանի անգամ կանգ առավ, ստուգելու արդյոք շա՞տ է ետ մնում նրանցից, նույնիսկ հարցրեց կշռավարին, թե նրանք ինչքան են ավել հավաքել իրենից։ Եվ երբ նա տեսնում էր, որ դեռ ետ է մնում, կրկին սկսում էր չարանալ, բայց չգիտես ի՛ր վրա, թե՞ ընկերների։



Նրա գլխում մտքերն սկսեցին խառնվել իրար։ Աչքերի առջև կրկին ծառացավ Արտոն, և Հայկը ներշնչվեց ինչ-որ մի վատ բան անելու մտքով։

Արտոյի մարգերն իրենից գտնվում էին ընդամենը մի քանի քայլի վրա։ Դրանք դեռ հավաքված չէին։

Հայկն զգաց, որ պիտի անի այդ վատ բանը, ինչ էլ որ լիներ, նա այժմ պատկերացնում էր իրեն ամենաառաջինը, բոլորից շատ հավաքողը։ Հապաղելն ավելորդ էր։

Նա ծնկների արանքում պինդ սեղմեց գոգնոցը, որտեղ ընդամենը մի քանի բուռ բամբակ կար, կուզեկուզ խորացավ Արտոյի մարգերի մեջ ու ըս-

*1. — Մակա՛ր, — ասաց Պստիկ Խոստիկը, — կգա՞ս միասին ճանապարհորդենք։*

*— Ու՞ր, — հարցրեց Երկար Մակարը։*

*— 21-րդ դար։*

*Երկար Մակարը վախեցած նայեց ընկերոջն ու զգուշության համար հեռու քաշվեց։*





կըսեց ճարպկորեն տերևախառ պոկոտել կնգուղավոր բամբակը։

Նրա դեմքը այդ պահին պատած էր քրտնքի մանըր կաթիլներով, ձեռքերն ու ոտքերը դողդողում էին։ Հայկը առաջին անգամ էր իրեն տեսնում այսպիսի վիճակում։

«Այո, սա գողություն է, սա ստորություն է»։

Ու հանկարծ նրան թվաց, թե առջևում ինչ-որ խշշոց լսվեց, և անմիջապես նա պատկերացրեց Արտոյին իր առջև կանգնած։ Հայկը կուչ եկավ թփի տակ, զգաց, որ ամոթը խեղդում է իրեն։

«Իսկ եթե հանկարծ Սեթն ու Կիման էլ իմանան, դասարանցիները, բոլորը...»

Դա սարսափելի էր։

Հայկը փորձեց ծիկրակել շուրջը, անգամ իրեն քնած ձևացրեց. սակայն ոչ ոք էլ չկար։ Փոքր-ինչ խաղաղվեց, սրբեց դեմքը, մինչ ամոթը, ամոթն ամուր էր նստած նրա հոգուն։

Նա անմիջապես առանց վճիռ հանելու կես գոգնոց բամբակը, որ հենց նոր էր հավաքել Արտոյի մարգերից, թափեց գետնին։ Բայց վճռականություն չունեցավ հանգիստ խղճով թողնել ու հեռանալ։

Նրանից մի փոքր այն կողմ կար բամբակի մի այլ կիտուկ, որ նույնպես կես գոգնոց հազիվ լինէր. Արտոն էր թողել ետդարձին վերցնելու համար։ Հայկը տեսավ և այդ կիտուկը, ու անորոշ մտքերն սկսեցին կրկին պաշարել նրան։ Բայց ըսպասիր, դրանով նա չէր լինում ամենաառաջավորը, շատ հավաքողը, նա դրանով միայն մեղավոր էր դառնում, մեղավոր հենց իր սեփական խղճի առջև։

Հայկը վերջնականապես հրաժարվեց վատ բան անելու մտքից և թողեց ու հեռացավ բամբակի կիտուկներից։ Այժմ նա կարող էր շվշվացնել, ազատ զբոսնել և՛ Արտոյի, և՛ Սեթի, և՛ մյուսների մարգերում, որովհետև ոչ գողություն էր անում, ոչ էլ նրանց դեռ չքաղած մարգերից էր բամբակ հավաքում։

Եվ դա ինչքա՜ն լավ է։

Կեսօրին նա չմիացավ ընկերներին, որոնք սովորաբար գնում էին լողանալու և երեսներին սև թութ քսելու։ Նա միայն փոքր-ինչ հանգստացավ, հաց կերավ ու շարունակեց իր գործը։ Իսկ այնտեղ՝ ճամփեզրին գտնվող կշռավարի մոտ, բամբակի մի հսկայական սար էր բարձրացել, նրանց ընկերության մեծ սարը, որտեղ յուրաքանչյուրն իր մասն ուներ, և որն հետզհետե բարձրանում ու բարձրանում էր նրանց հավաքած բամբակի ամեն մի բռով,

# ԿԱՔԱՎԻ ԵՐԳԸ

Խոսք՝ ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆԻ

Երաժշտ. ԿՈՄԻՏԱՍԻ

Աշխույժ

Արեվ բացվեց թուխ ամպերեն, կաքավ թըռավ
կանաչ սարեն, կանաչ սարեն՝ սարի ծերեն,
բարեվ բերավ ծաղիկներեն: Սիրունիկ,
սիրունիկ, սիրունիկ նախշուն կաքավիկ,
սիրունիկ, սիրունիկ,
սիրունիկ, նախշուն կաքավիկ:

Քո բույն հյուսած ծաղիկներով—
Շուշան, նարգիզ, նունուֆարով:
Քո տեղ լըցված ցող ու շաղով,
Քընես-կելնես երգ ու տաղով:

Քո թև փափուկ ու խատուտիկ.
Պըստի կըտուց, կարմիր տոտիկ,
Կարմիր-կարմիր տոտիկներով
Կըչքորորաս ճուտիկներով:

Երբ կըկանչես մամռոտ քարին,
Սաղմոս կասես ծաղիկներին,
Սարեր-ձորեր զվարթ կանես.
Դարդի ծովեն սիրտ կըհանես:

# Կոմիտաս

ՎԻԳԵՆ ԽԵՉՈՒՄՅԱՆ

Զարմանալի հարազատ ու նվիրական են այն մարդկանց դիմանկարները, որոնց թեպետ մենք չենք տեսել, բայց գիտենք, որ կյանքում նրանք թողել են իրենց անջնջելի հետքը: Դիտում ես այդպիսի դիմանկարը, տեսնում մարդկային սովոր դեմք ու հայացք, ձեռքեր, հագուստներ և մի խոսուն լռություն, որն այնքա՜ն հարց ու մտածմունք է առաջացնում:

Իմ սենյակի պատից կախված է հայ ժողովրդական երգի հանճար Կոմիտասի մի հին, արդեն գունատված լուսանկարը: Մի ժամանակ այդ նկարը նա պահել է իր ձեռքում: Նստած է երաժշտագետը դաշնամուրի առաջ, ստեղներին է պարզել մատները և, կարծես, մտքի մեջ ընկել:

Ի՞նչ է մտածել այդ պահին, ի՞նչ եղանակ է նվագել և երգե՞լ է արդյոք, իր հնչեղ ձայնով լցնելով սենյակը... Գուցե նստել է գիշերն անքուն, վրդովվել, որ տերերն ու իշխանավորները խորշում են ժողովրդական անխարդախ, սրտամոտ երաժշտությունից: Կամ գուցե ցավել է, որ օտարները, բանից անտեղյակ, ասել են, թե հայերը չունեն իրենց երգն ու երաժշտությունը, թե նրանք երգում են պարսիկի ու ասորու, հույնի ու արաբի եղանակներով: Եվ վրդովվելով ու ցավելով՝ ամբողջ այդ գիշեր էլ, ինչպես միշտ իր մեծ կյանքի ընթացքում, հեռուներից եկած ժողովրդի երգը խնամքով մաքրել է երկար ճանապարհի փոշիներից: Մաքրել է, մշակել, հստակել եղանակի և խոսքի իմաստները, կատարելագործել մեծ երաժշտագետի հանճարով:

Շատ են Կոմիտասի լուսանկարներն ու կտավին հանձնած դիմանկարները: Նրանցից ամեն մեկը մի հիշողություն է պատմում արվեստագետի կյանքից, ամեն մեկն ուրույն ձևերով բացում նրա ներաշխարհը:

Դիտելով հայտնի նկարները, մտածելով նրանց մասին, ես այցի եմ գնում իմ նկարիչ բարեկամին:

Ընդարձակ արվեստանոցում բազմաթիվ կտավներ կան, ճեպանկարներ՝ արված յուղաներկով, մատիտով: Նկարներ կան, որ նա թղթին կամ կտավին է հանձնել, գտնելու համար հայկական բնաշխարհի բնորոշ պատկերը, որոնելու Կոմիտասի այն դիմանկարը, որն ընդունակ լինի նոր մի խոսք ասել մեծ երաժշտագետի մասին:

Ամեն կողմից հետևում է ինձ Կոմիտասի ուշիմ հայացքը, ամեն անկյունում Հայաստանի բնության մի բեկորն է հավաքված: Տարիներ են անցել, մինչև մեծ մի կտավի վրա նկարիչը խմբել է այդ ամենը:

Փայտե մի սովորական շրջանակ իր մեջ է առել Հայաստան աշխարհի լեռն ու ձորը, ծաղիկն ու թուփը, կապույտ ու խոր երկինքը: Կոմիտասը, ամբողջ հասակով կանգնած այս բարձրում, ականջ է դնում ձայներին: Նա լարված լսում է երաժշտական այն ցրիվ հնչյունները, որ հայրենի բնությունից, իր արդար աշխատանքից որսալով՝ երգի է վերածել ժողովուրդը: Օդում թրթռում են չմարող հազար ելևէջ: Հեռուներից գալիս, փռվում է լեռնագագաթների շընկշընկան հովը, խոնավ հողի բույրը, որ տարածվում է վարատեղից, ձնահամ աղբյուրների կարկաչը և ջրի եկած աղջիկների խորհրդավոր քչփչոցը, որ սկիզբ ու վերջ չունի...

Կտավի վրա ես տեսնում եմ կոմիտասյան նույն ծանոթ, երկար մատները, երաժշտի հանելուկային մատները, նույն հայացքը՝ մտածկոտ, ամբողջովին լսողություն դարձած: Եվ թեպետ ընկերս շարունակում է աշխատել՝ մոռացած իմ ներկայությունը, ես չեմ կարողանում չհարցնել, թե որտեղի՞ց է եկել իր և մեր Կոմիտասը, ու՞ր է գնալու:

Նա ցած է դնում վրձինը, ժպտում, հասկանում է, որ երկիմաստ է իմ հարցը: Այն վերաբերվում է իրեն՝ Մարդ-Կոմիտասին, և նրան, որ կանգնած է իմ առջև, կտավի վրա: Բայց պատասխանում է խորամանկելով.

— Դուրս է եկել էջմիածնից, հոգնած ու ձանձրացած վանականների միօրինակ տաղտուկից, բարձրացել է իր սիրելի գյուղերով վեր, ելել Արագածի լանջը: Երեկ նրանից կրկին դժգոհ էին, որ ճեմարանի գործերը մոռացած, գնացել է Արագածոտն ինչ-որ գյուղական հարսանիքի և այնտեղ գրի է առել հազար ու մի շինական երգ... Իսկ հիմա նա մենակ է ինքն իր հետ: Մտքում երեկվա լսած երգերն են, երեկվա մարդկանց պարզ ու սիրելի դեմքերը: Եվ շուրջը բնությունն է խոսում, ստիպում մտորել, թե ու՞ր է գնալու ինքը՝ չարքաշ շինականների միակ բարեկամը...

Իսկ ես լրացնում եմ.



Հենրիկ Սիրավյան—«ԿՈՄԻՏԱՍ»

— Մինչև Արագած բարձրանալը, ճանապարհին նա հիշել է իրենց տունը Փոքր Ասիայի հեռավոր Կուտինա քաղաքում, հիշել մանկությունը: Մտաբերել է, իհարկե, հորը՝ կոշկակար Գևորգ Սողոմոնյանին և մորը՝ Թագուհի Հովհաննիսյանին, որին այնքան շուտ կորցրեց: Նրանք էլ իրենց պապերի նման երգում էին հին-հին երգեր... Այսպես, հիշել է, ուրախացել: Ծնողներն էին, որ նրան տվեցին երաժշտական առաջին դասերը, հնչեղ ձայն, աշխատասիրություն և հոգու ազնվություն: Իսկ Էջմիածնի վանականնե՞րը... Ի՛հ, կա ժողովուրդը, մի տաղանդավոր, սիրելի, աշխատավոր ժողովուրդ: Եվ կան այս լեռն ու ձորը, այս Արարատյան դաշտը, ներքևում այս գյուղերը, շեները, արտները...

Ընկերս լսում է ինձ, բայց միաժամանակ, երևում է, որ շտապ ինչ-որ մտածում, վճռում է: Եվ երբ ես լռում եմ, նա առաջարկում է հենց հիմա վեր կենալ և ուղևորվել դեպի սարերը: Րոպեներ հետո մենք իսկապես ելնում, ճանապարհ ենք ընկնում:

Սարերում խորացել է աշունը: Նարինջով, ոսկով, կրակե կարմիրով են ներկվել ծառերի տերևները, աշնան կարճացողուն խոտը, մամռապատ քարերը: Բարակել են առու ու գետակ, այնպես են հստակվել, որ երևում է արեգակի շողք-շառավիղի տակ ճառագայթող յուրաքանչյուր ա-



վազահատիկ, յուրաքանչյուր զմրուխտե ջրխոտ։

Մենք դանդաղ բարձրանում ենք Արագածի լանջն ի վեր։ Արդեն ներքևում են մնացել գյուղերը, մրգաթափվող այգիները և արտերը, որտեղ սկսվել է աշնան վարը։ Մենք տեսնում ենք տրակտորներից օղակ-օղակ պոկվող կապույտ ծուխը, այն ճանապարհները, որտեղով այնքան շատ գնացել-եկել է Կոմիտասը, գյուղերում գրի առնելով ժողովրդական երգի բոլոր փշրանքները։

Ահա մի այլ լանջի վրա մակաղել է կոլտնտեսական ոչխարի հոտը։ Երբ ականջ ենք դնում, թվում է, լսվում է հովվի փողի մարդախոս ձայնը։ Այս այն փողն է, որ Կոմիտասը համարում էր մեր ժողովրդի երաժշտական սեփական գործիքը և սովորեցնում էր, թե ինչպես կարելի է նրանով արտաբերել բնության էական գույներն ու մարդու հոգին իր բոլոր զգացումներով։

Մեր ճանապարհին աղբյուրներ են պատահում։ Բայց մենք ծարավ չենք։ Ցոգ չէ։ Սակայն զովի կարիք ենք զգում, սառը հովի կարիք։ Եվ ընկերս ցույց է տալիս քարի վրա կանգնած փողհար հովվին։ Նա կանգնել է բարձրում, ինչպես ընկերոջս Կոմիտասը կտավի վրա, նայում է շուրջը, լսում ձայներ, շնչում միայն իրեն իմանալի բույրեր։ Հետո մենք տեսնում ենք փողը, որ մոտենում է շուրթերին և, գեղգեղում է կոմիտասյան զովաբեր եղանակը։

Փողը ձայնարկում է մեզ ծանոթ հնչյուններ, բայց ինչ-որ այնպես չէ մի քիչ։ Սա այն է, ինչ գրի է առել Կոմիտասը, սա բնականն է, որ մշակվելուց հետո դարձել է...։ Սակայն ընկերս արդեն ձայնակցում է հովվին՝ մըշակված, հստակված երգով.

*Հո՜վ արեք, սարեր ջան,*
*հո՜վ արեք.*
*Իմ դարդին դարման*
*արեք...*

Դիմբում են մոտիկ ժայռերը, արձագանքը երկուատկվում է խոնավ խոռոչներում։ Երգն ու հովվական փողի հնչյունները թևածում են մեր շուրջը, ասես տարածվում Մասիսներին հասնող վերնալու հեռու լեռները մեջբոլորող այն երկրի վրա, որ մեր Հայրենիքն է, մեր նորացած ժողովրդի հայրենի տունն ու կրակը։

*Սարե՜ր, ձորե՜ր, դաշտե՜ր*
*ու ջրե՜ր,*
*Մարմանդ-մարմանդ վազող աղբյուրնե՜ր,*
*Մի վե՛ր կացե՛ք, իմացե՛ք,*
*Տեսե՛ք իմ սրտի ցավեր...*

Այն անցած դժվարին դարում մեկ էին ժողովրդի և Կոմիտասի սրտի ցավերը։ Պատմության ծանր անիվն ուզում էր տրորել մեր գիրը, սրբատաշված քարը, երաժշտությունն ու երգը, զրկել ժողովրդին գոյություն ունենալու իր իրավունքից, ձգում էր ոտնատակ տալ տունն ու կրակը։ Իսկ Կոմիտասը, բարձրացնելով հայ երգն ու երաժշտությունը, տարավ իր հետ աշխարհե-աշխարհ, ցույց տվեց Բեռլինում, Փարիզում, Ժնևում, Լոզանում, երգեց, դասախոսություններ կարդաց, ուսումնասիրություններ հրապարակեց։ Աշխարհն ընդունեց ինքնուրույն և բարձրարվեստ մեր երգը, ընդունեց հիացմունքով և զարմանքով... Որտեղ հասնում էր Կոմիտասի և իր երգչախմբերի ձայնը, այնտեղ երգ ու լեգենդ էր դառնում մեծ արվեստագետը, դառնում կախարդող հրաշք, որ երբևէ ծնել է հայոց հողը...

Լռում է հովվի փողը, լռում է ընկերս, կտորակվելով փշրվում է արձագանքի վերջին հընչյունը, որպեսզի ձորի պռունկից ծնվի նոր մի երգ, մի նույնպես շատ ծանոթ երգ, որ սովորեցրել է մեզ Կոմիտասը։

Ձորի պռունկը բարձր է, խիստ զառիթափ է տեղը։ Այնտեղ վար են անում երեք զույգ եզներով։ Եվ մաճկալ կոլտնտեսականը հիմա հիշել իր ավանդական հորովելն է ձայնարկում ջահել հոտաղների մասնակցությամբ։ Փավում, տարածվում է աշխատանքի մահ չունեցող եղանակը՝ Կոմիտասի սիրելի գութաներգը։ Եզները ճիգ են անում և, երգի հորդորին հնազանդ, ելնում թեք զառիթափով։

լիներ, հիմա մեր կողքին կանգներ Կոմիտասը, ականջ դներ, հակեր այս հնչյունների անաղարտությունը, ինչպես անում էր ամբողջ կյանքում: Հետո մեզ հետ միասին նայեր շուրջ-շրջապատին, տեսներ, թե ինչպես է վերափոխվել իր գեղեցիկ բնաշխարհը: Տեսներ ներքևում տարածված կոլտնտեսական գյուղերը, երկհարկ տներն այգիների մեջ, լուսավոր ակումբները, որտեղ չի լռում ոչ կոմիտասյան երգը, ոչ նորը, որ ստեղծում է այսօրվա կյանքը: Ապա նայեր այս նույն Արագածի լանջին, Բյուրականի մոտ կառուցված աստղադիտարանին և իմանար, որ այնտեղ երիտասարդ մի գիտնական, գուցե այս մաճկալի որդին, աստղերի ճանապարհը հակելով, դնդնում է իր հոր ավանդած եղանակը...

Կոմիտասն ուզում էր երաժշտական դպրոցներ հիմնել Հայաստանում: Ինչպե՞ս հիմա ասել նրան, որ մենք տասնյակ այդպիսի դպրոցներ ունենք, և որ նրանցից ամենաբարձրերը կրում են իր իսկ անունը: Եվ ինչպե՞ս ասել, թե իր երգերն այսօր տանում են աշխարհե-աշխարհ նրա աշակերտները և նորից հիացմունք վաստակում: Վաստակում արժանի իրավունք և տեղ Մեծ Աշխարհի Երաժշտական գանձարանում:

Կոմիտասն ուզում էր կարդալ մեր՝ հին ձեռագիր գրքերում պահպանված ձայնանիշերը, կենդանացնել այն երգերը, որոնք քարացել մնացել էին մագաղաթների երեսներին: Նա ասում էր, թե արդեն գտել է բանալին...

Համաշխարհային առաջին պատերազմը և Արևմտյան Հայաստանում ծայր առած հայերի դավադիր ջարդը կիսաճամփին խափանեցին Կոմիտասի գործը: Տեսնելով կոտորածի արհավիրքը, նա կորցրեց հոգեկան հավասարակշռությունը: Քսան երկար տարի Կոմիտասն ապրեց «մեռած», ապրեց Փարիզի հոգեբուժարաններում, այլևս անկարող երգել դարերի համար, անկարող լսել նոր ձայներ ու հնչյուններ: Եվ նա երկրորդ անգամ մեռավ 1935 թվականի հոկտեմբերի 21-ին:

Հեշտ չեղավ Կոմիտասի կյանքը: Նա գիտեր, որ ժողովուրդն է բոլոր բարձր արվեստների ստեղծագործողը, և խորհուրդ էր տալիս գնալ ու սովորել նրանից: Ինքը գնաց առաջինը, գնաց, իմանալով, թե ինչպիսի վիհեր կան առջևից գնացողի ճանապարհին:

Լռել է գութաներգը, վարողները նստել են հանգստի: Իսկ մենք՝ մոլոր շրջում ենք վերում, անթառամ ծաղիկներ հավաքում, որ վերադարձին դնենք մեծ երաժշտագետի գերեզմանին: Հետո նստում ենք վարած արտի ծայրին, շնչում այն օդը, որ շնչել է Կոմիտասը, նայում այն հեռուներին, որ տեսել է նա մեզնից շատ առաջ, և կրկնում ենք նրա երգերը, հատ ու կենտ խոսք փոխանակում, որ չլռենք, հիշենք, չմոռանանք:

# ԱՇՈՒՆ

ՎԱՐԴԳԵՍ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Փոխվեցին նորից գույները կանաչ,
Աշուն է իջել իմ շեն աշխարհին.
Լցվել է այգին մրգով արևաչ,
Ու ձյուն է նստել մեր սեգ սարերին:

Խոտն է չորացել, խառնվել հողին,
Սուրում է քամին՝ ձմռան լրաբեր.
Պոկվում է ծառից տերևը դեղին,
Ու մերկանում է զուգված այգին մեր:

Տե՛ս, փայտացել են ճյուղերը դալար,
Էլ չեն օրորվում սաղարթով կանաչ.
Դաշտը ծածկվում է մշուշով խավար
Ու էլ չի լսվում մայուն ու բառաչ...




Ուրիշների մասին չգիտեմ, բայց Լևի ու Վիտկայի մասին կարելի է ասել, որ նրանք այնպիսի ընկերներ են, որոնց, նույնիսկ, ինչպես ասում են, ջրով էլ չես բաժանի։

Ապրում են նրանք միևնույն շենքում, սովորում միևնույն դպրոցում և նստում նույն նստարանին։ Իսկ այն, որ նրանք հաճախ վիճում են, ոչինչ չի նշանակում. մեկը առանց մյուսի չի կարող ապրել։ Դեռ կարգին չվիճած, անմիջապես հաշտվում են։

Նրանք տարբեր մարդիկ են։ Վիտկան բարձրահասակ է, խարտյաշ։ Տաբատն ու շապիկն ամեն տարի վրան փոքրանում են։ Լևը, ընդհակառակը, փոքրահասակ է, սև մազերով և երեք տարի է, ինչ ման է գալիս նույն տաբատով՝ բոյ չի քաշում։

Ինչով էլ որ նրանք զբաղվեն՝ մտածողը միշտ Լևն է, կատարողը՝ Վիտկան։ Նրանք այնքան օգտակար բաներ են սարքել, որ այլևս տեղ չունեն պահելու։ Նույնիսկ կատվի համար պատրաստել էին հատուկ ակնոցներ. «Լև ու Վիտկա սիստեմի», որոնցով կատուները կարող էին շատ լավ տեսնել, թե ցերեկը, թե գիշերը։

Էլ ի՞նչ հեռու գնանք։ Լսեք, թե ինչպես նրանք կազմակերպեցին «Հմուտ ձեռքեր» խմբակը։

Մի կիրակի Լևը զանգեց Վիտկային.

— Այդ դու՞ ես, Վիտկա, ես եմ՝ Լևը... Դու հմուտ ձեռքեր ունե՞ս...

— Ինչպե՞ս թե հմուտ։

— Որևէ բան սարքել կարո՞ղ ես, տաշել, սղոցել...

— Քիչ ու միչ գիտեմ։

— Ուզու՞մ ես սովորեցնեմ։

— Էլի պարծեցավ,— ասաց Վիտկան։

— Շուտ արի։ Գանձատուփդ էլ հետդ վերցրու։

— Փողո՞վ ես սովորեցնում,— բարկացավ Վիտկան։

Բայց պարզվեց, որ փողերը այլ բանի համար էին։ Բոլորին հայտնի է, որ ամենավարպետ ձեռքերը առանց գործիքի ոչինչ չեն անի։ Վիտկան ու Լևը դատարկեցին իրենց գանձատուփերը ու վազեցին խանութ։ Այնտեղ ինչքան ուզես, գործիքներ կային. ռանդաներ, մետաղասղոցներ, դուրեր և հարթաշուրթեր, վրձիններ և մուրճեր, կացիններ և ունելիներ։ Դրանք շարված էին ցուցափեղկերի ապակիների տակ, թարեքներում, ամրացված էին պատերին։ Տղաների աչքերը փայլեցին։ Նույնը և դրանից էր, որ նրանք գնեցին այն, ինչ դրված էր հենց իրենց առաջ-շաղափ, գայլիկոնների լրիվ հավաքածուով։

— Ռանդա էր հարկավոր գնել,— փնթփնթում էր Վիտկան,— ռանդայով տաշել կարելի է, իսկ շաղափով ի՞նչ կարող ենք անել։

— Ինչպե՞ս թե ինչ։ Կարող ենք անցքեր բացել,— չէր վհատվում Լևը։ Անցքեր բաց անելն էլ է հետաքրքիր։ Եկ փորձենք անցքեր բանալ մեր ցանկապատի վրա։

— Ինչու՞ համար,— զարմացավ Վիտկան։

— Բակը կարող ենք տեսնել։

— Բակը կարող ենք դարբասից էլ տեսնել,— փնթփնթաց Վիտկան, որը նույնպես անհամբերությամբ ուզում էր փորձել շաղափը։

— Կա՛ց, ես եմ առաջինը ծակելու,— գոռաց Լևը։

Նա գայլիկոնը մոտեցրեց ցանկապատի տախտակին, կրծքով հենվեց գործիքի գլխիկին ու սկսեց պտտել։ Գայլիկոնը պտտվելով մտավ տախտակի մեջ և մի րոպեից հետո դուրս եկավ մյուս կողմից։ Ստացվեց մի կլոր ու կանոնավոր անցք։ Հետո էլ Վիտկան վերցրեց շաղափը և սկսեց ծակել։

Երբ նրանք նայում էին, ամեն մեկն իր ծակած անցքից, քիչ էր մնում հիացմունքից սրտները ճաքեր. բակը նրանց թվաց հեքիաթային։

— Ոնց որ կինոյում լինենք,— շշնջաց Լևը,— իսկ դու չէիր հավատում, որ անցքեր բանալը հետաքրքիր է։ Դու ինձ միշտ հավատա, ես գիտեմ, թե ինչ եմ անում։ Ռանդան ի՞նչ պետք է անեինք որ։ Նրանով անցք չէիր բաց անի,— պարծեցավ Լևը։— Եվ հիմա իմի մոտ մի ուրիշը կբանամ, կնայեմ ինչպես հեռադիտակից։

Երկու անցքից նայել այն ամենին, ինչ կատարվում էր բակում, ավելի հետաքրքիր էր։ Ցավն այն էր, որ այդ միջոցին բակում ոչինչ չկար։ Ա՛յ քեզ բա՛ն... Երբ հարկավոր չի, բեռնատար ավտոն քարածուխ է բերում, կամ դանակ ու մկրատ սրողը անցնում է լուսամուտների տակով ու գոռում. «Դանակ-մկրատ սրեմ» – իսկ հիմա բակը կարծես մեռած լինի։

— Դուք այստեղ ի՞նչ եք անում,— լսվեց հանկարծ մի ձայն։ Այդ Գարիկն էր՝ յոթերորդ բնակարանից։ Տղաները նրա հետ ընդհանրապես չէին լինում, որովհետև նա ամենաառաջին խաբարբզանն էր ամբողջ դպրոցում։

Ուրիշ ժամանակ Լևն ու Վիտկան չէին պատասխանի նրան, բայց հիմա իրար ընդհատելով սկսեցին պատմել, թե ինչ հետաքրքիր է նայել ցանկապատի անցքերից։



— Հապա, թողեք, ես էլ նայեմ,— ասաց Գարիկը և ուզում էր արդեն նայել, բայց Լևը ետ քաշեց նրան ցանկապատից։

— Ի՞նչ ես ուրիշի բացած անցքերից նայում։ Պատրաստի՞ն ես վազում, հա՞։

— Իսկ ինչ է, կմաշվի՞, որ նայեմ,— կծեց Գարիկը,— պա՛հ, իսկի էլ մի թողնի։ Շատ պետքս է։ Կգնամ կասեմ, որ ցանկապատը փչացնում եք։

*2. Բայց պարզվեց, որ Պստիկ Խոստիկը չի կատակում։ Նա Երկար Մակարին ցույց տվեց մի տարօրինակ մեքենա.*

*— Սա ի՞նչ բան է,— հարցրեց Երկար Մակարը։*

*— Ժամանակի մեքենա։*

*— Ի՞նչ...*

*— Տրանսպորտի մի տեսակ, որի օգնությամբ կարելի է գնալ ոչ թե մեր տնից դեպի դպրոց, այլ 1960 թվականից՝ 2020 թվական։ Նստի՛ր, նստի՛ր...*





Նկ. Ա. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Վիտկան ուզում էր բղավել, թե «գնա ասա, խաբարբզիկ» բայց մտածելով, որ մի անգքի համար կարող է գործը վատանալ, փորձեց հաշտվել։

— Լավ, լավ... մենք քեզ համար էլ անգք կբացենք։ — Հենց այստեղ մի հիանալի միտք ծագեց նրա գլխում։ — Միայն, գիտե՞ս ինչ. դու սկզբից մտիր բակ ու մի բան արա, ինչպես կինոյում կամ կրկեսում։

Գարիկը կշռադատեց առաջարկությունն ու ասաց.

— Եթե երկու անգք է, ապա ես...

— Այնտեղ կտեսնենք, — ասաց Վիտկան։ Գնա, քանի մենք համաձայն ենք, թե չէ ուրիշին կգտնենք։

Ու Գարիկը վազեց «ներկայացում» սարքելու։

Նա ջանք չէր խնայում. ձեռքերն էր թափահարում, ծամածռություններ անում, ցույց էր տալիս, թե ինչպես են քայլում հարբածները և այլ նման բաներ...

Վիտկան և Լևը ծիծաղից թուլացել էին։

— Չորեքթաթ ման արի, — բղավում էր Վիտկան։

— Ձեռքերի վրա ման արի. — հիացած գոռում էր Լևը։

Եվ Գարիկը այսպես ազնիվ վաստակով ցանկապատի վրա երկու անգք ձեռք բերեց։

Եվ կարծես դիտավորյալ, բակը, որ մինչ այդ մեռած էր թվում, անմիջապես աշխուժացավ. երեվաց բեռնատար ավտոմեքենան, մի մորաքույր դույլը տարավ լվանալու, երեխաները բոլոր կողմերից դուրս թափվեցին խաղալու... Բոլորը կանգ էին առնում ու տարակուսանքով նայում Գարիկին. ինչ է կատարվում այս տղայի հետ, ինչու՞ է չորեքթաթ ման գալիս բակում։ Իսկ Գարիկը այնքան էր տարված իր դերով, որ ոչինչ չէր նկատում։

Հանկարծ ինչ-որ մեկը ամուր բռնեց Լևի թևից։ Լևը քիչ մնաց ահից մեռներ. նրա առաջ կանգնած էր դռնապան քեռի Նիկոլայը։ Մյուս ձեռքով նա բռնել էր Վիտկայից։

— Այս ի՞նչ բան է։ Ցանկապատը ամբողջ ծակոտել եք, — ասաց նա իր ահեղ թավ ձայնով։

— Թողեք... — ճչաց Լևը։

— Մենք այլևս չենք անի, — կմկմացնելով ասաց Վիտկան։

— Շատ կներեք... ես գիտեմ ձեր նմաններին, — ասաց քեռի Նիկոլայը, — գնանք ձեր ծնողների մոտ...

Ու նա տղաներին քաշ տվեց սառած, շշմած հանդիսականների մոտով։

Լևենց տանը ոչ ոք չկար, և քեռի Նիկոլայը բաց թողեց նրան, արտահայտելով մոտավորապես



3. — Իսկ ինչո՞ւ ենք գնալու 2020 թվականը, — հարցրեց Երկար Մակարը։

— Մեզ գործուղում է «Պիոներ» ամսագիրը։ Մենք 2020 թվականից բերելու ենք «Ուզում եմ ամեն ինչ իմանալ» թերթը։

— Ինչո՞ւ...

— Մեր ընթերցողները շատ են ուզում իմանալ, թե ինչպիսին կլինի գիտությունն ու տեխնիկան 21-րդ դարում... Ուշադրություն։ Մեքենան ընթացքի մեջ եմ դնում։

այսպիսի միտք, որ խելոք մարդը, օրինակի համար, ավելով էլ օգուտ կտա, իսկ հիմարին մեքենա էլ տաս՝ վնաս կբերի։

Թե ինչ էր տեղի ունենում Վիտկայենց տանը, պատմելն իսկ սարսափելի է...

Մոտ մի ժամ անց Լևը վանգահարեց Վիտկային.

— Վիտկա, ինչո՞վ ես զբաղված։

— Դասերով,— ընկնված պատասխանեց Վիտկան,— իսկ դու՞։

— Ես աշխատում եմ, աթոռների վրա անցքեր եմ բաց անում։ Մենք գնել ենք նոր աթոռներ, բայց առանց անցքի են։ Ահա և ես դրանք վերափոխում եմ։ Շատ գեղեցիկ է ստացվում։ Հետո պետք է ծակեմ դռները...

— Ինչու՞ համար,— զարմացավ Վիտկան։

Օդափոխության... ինչպես լողարանում։ Մեր բնակարանը շատ հեղձուցիչ է, ի՞նչ ես ծիծաղում...

— Իսկ մայրդ ի՞նչ կասի,— ծիծաղեց Վիտկան։

— Կասի՝ շատ ապրես, դու իսկական վարպետ ես։ Դե, ես ժամանակ չունեմ երկար խոսելու, պետք է աշխատեմ,— ասաց Լևը ու լսափողը կախեց։

Նա էլ չզանգեց մինչև երեկո, Վիտկան չհամբերեց ու ինքը զանգահարեց։ Հեռախոսին մոտեցավ Լևի մայրը։

— Խնդրում եմ Լևին,— ասաց Վիտկան։

— Նա չի կարող մոտենալ հեռախոսին,— բարկացած ասաց մայրը։

— Ի՞նչ է, էլի աշխատու՞մ է։

Ոչ, այլևս չի աշխատում, նա քիթը բարձի մեջ խոթած, պառկել, մտածում է, թե էլ ի՞նչ փըչացնի, բացի աթոռներից, սեղանից ու իմ կոշիկներից։

Նա կոշիկնե՞րն էլ է ծակոտել,— ախ քաշեց Վիտկան։

— Այո, գլխներիս փորձանք դառավ այդ տղան, իսկ հոր կոշիկներից հասցրել է ծակոտել միայն ձախը... Հասկանալի՞ է։

— Հասկանալի է։

— Դե, ուրեմն՝ կախիր լսափողը։ Հենց նոր եկավ քեռի Նիկոլայը, երևի դու և Լևը ձեր «հմուտ» ձեռքերով նրա գլխին էլ եք մի օյին բերել։

Վիտկան ոչինչ չպատասխանեց ու շտապ կախեց լսափողը։

*Թարգմ. ԿԱՐԵՆ ՋՈՐՅԱՆ*




*4. Ժամանակի մեքենան սլացավ օրերի, շաբաթների, ամիսների ու տարիների վրայով դեպի 2020 թըվականը...*

*5. Պտտիկ Խոստիկն ու Երկար Մակարը «Պիոների» հանձնարարությունը պատվով կատարեցին։ Նրանք բերել են 2020 թվականի հոկտեմբեր ամսվա թերթը, որը դուք տեսնում եք ամսագրի հաջորդ էջում։*






№ 10 ՀՈԿՏԵՄԲԵՐ 2020 թ.

## ՄԵՐ ՕՐԵՐԻ ՄԵՏԱՂԸ

Իհարկե, դուք անմիջապես գուշակեցիք, որ խոսքը տիտանի մասին է: Հիմա, երբ ամեն քայլափոխին մեզ հանդիպում է այդ հրաշալի մետաղը, դժվար է հավատալ, որ ընդամենը տասնչորս տարի առաջ է սկսվել տիտանի արդյունահանումը:

Բոլորին հայտնի է նաև, որ դարեր շարունակ մարդիկ օգտագործել և ամենատարածված մետաղ են համարել երկաթը: Իսկ ինչպե՞ս եղավ, որ հանկարծ երկաթը իր տեղը զիջեց տիտանին:

...Շրջապատի յուրաքանչյուր առարկա և շնչավոր մարմին ունի իր կյանքի տևողությունը: Օրինակ, կրիաների կյանքի միջին տևողությունը 300 տարի է, ձիերինը՝ 30, մարդիկ միջին հաշվով հիմա ապրում են 80 տարի: Իրենց «կյանքի տևողությունը» ունեն նաև մետաղները: Մոտ կես դար առաջ երկաթի «կյանքի տևողությունը» 35 տարի էր: Դրանից հետո երկաթը սկսեց «ծերանալ» ու քայքայվել:




Դեռ այն ժամանակ մետաղագետները համոզված էին, որ երկաթը անպայման իր տեղը պետք է զիջի ավելի դիմացկուն, թեթև մետաղների:

Անցյալ դարի 60-ական թվականներին արդեն պարզ էր, որ ալյումինը, մագնեզիումը, պղինձը, տիտանը, ցիրկոնիումը անպայման պետք է փոխարինեն երկաթին: Այն կարծիքը, որ դրանք հազվագյուտ մետաղներ են՝ հերքվեց: Երկաթին փոխարինելու միակ արժանավոր թեկնածուն դարձավ տիտանը, իր հետևյալ հատկությունների համար.

տիտանը մոտ երկու անգամ ամուր և բավականին թեթև է երկաթից: Նրա քանակությունը երկրագնդի վրա կազմում է 0.6 տոկոս: Նշանակում է՝ տիտանը ամենատարածված տարրերից մեկն է: Տիտանը չի վախենում օքսիդանալուց: Նրա վրա չեն ազդում ո՛չ թթուները, ո՛չ ալկալիները: Տիտանը չի քայքայվում նույնիսկ «արքայաջրի» (այն թթուտը, ուր քայքայվում է ոսկին) մեջ: Այդ մետաղը ավելի ջերմադիմացկուն է, քան երկաթը:

Առաջին անգամ տիտան են արդյունահանել 1946 թվականին: Եվ երբ երկու տարի անց տիտանի հանույթը կազմեց 10 տոնն, 1954 թվականին՝ 7200 տոնն, իսկ 1955 թվականին 20 հազար տոնն, ապա այդ հանգամանքը մի ավելորդ անգամ ևս ապացուցում է, որ իրոք, մեր օրերում, այն պետք է դուրս մղեր երկաթն ու դառնար քսանմեկերորդ դարի ամենատարածված մետաղը:




## „ՆԱԻՐԻ-374“

*Երևանի փողոցներում վերջերս հայտնվեց մի նոր ավտոմեքենա, որը անմիջապես գրավեց մարդկանց ուշադրությունը: Դա «Նաիրի» ավտոգործարանի թողարկած վերջին մոդելն է: Իսկ ինչով է «Նաիրի—374»-ը տարբերվում մյուս ավտոմեքենաներից:*

*. . . Պատկերացրեք, որ մենք մի փոքրիկ ճանապարհորդություն ենք կատարում այդ նոր ավտոմեքենայով:*

*Հսկայական արագությամբ սլանում ենք քաղաքի մայրուղիներով ...Քիչ անց հետևում են մնում քաղաքամերձ ամառանոցները...*

*Հանկարծ...մեր ավտոմեքենան պոկվում է գետնից և վեր բարձրանում:*

*Այո, մենք թռչում ենք օդում: Ցածում երևում են հատուկենտ տների կարմրավուն տանիքները, բանջարանոցները, ոլորապտույտ ջրանցքը, բետոնապատ ճանապարհի նեղ ժապավենը... Բայց հետաքրքիր է, ինչպե՞ս է ավտոմեքենան թռչում օդում:*

Ավտոմեքենայի կառուցվածքը բավականին պարզ է:

Առջևում գտնվում է շարժիչը, որը պտտում է մեքենայի առանց



անիվները: Բայց երբ սեղմում ենք «Թռիչք» մակագրությամբ ունեցող կոճակը, շարժիչը անիվներից անմիջապես անջատվելով, միանում է հորիզոնական պտուտակներին: Դրանք հիշեցնում են ուղղաթիռի պտուտակների, բայց ավելի փոքր են ու պտտվում են ավելի արագ: Եվ ավտոմեքենան սկսում է թռչել:

«Նաիրի — 374»-ին չեն վախեցնում ճանապարհին հանդիպող գետերը, ձորակները, լճերն ու բլրակները:

Նոր ավտոմեքենայի իրանը պատրաստված է փրփրային պլաստմասսայից:

*Սիրելի ընթերցող.*

Երբ մեր տիեզերական նավերը ճեղքում են միլիոնավոր կիլոմետրեր ու մեր տիեզերագնացները այցելություններ են կատարում հարևան մոլորակներին, երբ երկրագունդը ամեն անգամ ցնծությամբ է դիմավորում մեր մարսեցի բարեկամներին, ակամայից երբեմն հիշում ենք այն օրերը, երբ մարդիկ դժվարանում էին հավատալ այդ ամենին:

Եվ տարօրինակ չէ, որ սրանից մոտ վաթսուն տարի առաջ Երկրագնդի և Մարսի վրա հրատարակվող «Գիտություն և տեխնիկա» հանդեսները տպագրել են հոդվածներ, որոնց վրա այսօր ուզում ենք հրավիրել ձեր ուշադրությունը:

Առաջին հոդվածի հեղինակը Մարսի նշանավոր գիտնականներից մեկն է՝ Թեն Շարի Ուն:

Երկրորդ հոդվածը գրել է հայ աստղաբուսաբան Հակոբ Հրաչյանը:

Ահա այդ հոդվածները: Մի մոռացեք, որ դրանք գրված են եղել ավելի քան կես դար առաջ: Այն օրերին, երբ կատարվում էին դեպի տիեզերք թռչելու առաջին փորձերը:

# Կյանք կա՞ արդյոք Մարսի վրա

ՀԱԿՈԲ ՀՐԱՉՅԱՆ

Արեգակնային համակարգի ամենախորհրդավոր և հետաքրքիր մոլորակը մինչև հիմա էլ Մարսն է կամ ինչպես հին Հայաստանում էին ասել՝ Հրատը:

Այդ մոլորակը Երկրագնդից բավականին փոքր է: Շրջապատված է նոսր մթնոլորտային շերտով, որի բաղադրության մեջ թթվածնի և ջրային գոլորշիների քանակությունը շատ քիչ է:

Մարսի վրա չկան ջրային ավազաններ կամ գետեր: Մոլորակի ամբողջ մակերևույթը, բացի բևեռներից, ծածկված է ավազուտներով և ճեղքվածքներով:

Մարսը կլիմայական շատ խիստ պայմաններ ունի: Ձմռանը այնտեղ տիրում է 50-ից մինչև 80 աստիճան սառնամանիք: Հասարակածային գոտում ամենաշոգ օրերին ջերմությունը 25 աստիճանից չի բարձրանում:

Վերջերս ակադեմիկոս Գ. Ա. Տիխովը ապացուցեց, որ չնայած այդ խիստ պայմաններին, հնարավոր է բուսական աշխարհի գոյությունը Մարսի վրա:

Իսկ արդյո՞ք բացի բուսականությունից, Մարսի վրա գոյություն ունի կենդանական աշխարհ: Այս հարցին պատասխանելը շատ դժվար է: Իհարկե, ենթադրություններ կան, բայց դրանք դեռևս փաստեր չեն:

1859 թվականին իտալացի գիտնական Անջելո Սեկկին Մարսի վրա նկատեց երկրաչափորեն ճիշտ շերտեր, որոնց անվանեց ջրանցքներ:

Հետագայում Անջելո Սեկկիի դիտումները հաստատեց իտալացի մի ուրիշ գիտնական Սկիապարելլին: 1893 թվականին Սկիապարելլին մի հոդված տպագրեց և փորձում էր ապացուցել, թե Մարսի ջրանցքները կառուցված են... մարսեցիների ձեռքով:

Բայց անցան տարիներ: Մարս մոլորակի ուսումնասիրությամբ զբաղվեցին բազմաթիվ ուրիշ գիտնականներ: Նոր դիտումները նոր վեճերի առիթներ ստեղծեցին:

Գիտնականների և ֆանտաստ գրողների մի բանակը պնդում է, որ Մարսի վրա կյանք գոյություն ունի:

Այդ ապացուցելու համար նրանք բազմաթիվ փաստեր են բերում:

Բայց հակառակ բանակը այդ նույն փաստերն օգտագործելով, ժխտում է Մարսի վրա կյանքի գոյությունը: Եվ իրոք, եթե մարսեցիները այդքան հասել են գիտության ու տեխնիկայի զարգաց-



ման այնպիսի աստիճանի, որ կարողանում են իրենց մոլորակը ծածկել ջրանցքների խիտ ցանցով, ապա ինչո՞ւ մինչև հիմա համառում են թռչել դեպի Երկիր:

Եթե երկրի առաջին բնակիչը ոտք դնի Մարս մոլորակի վրա, թերևս այնտեղ նրան դիմավորեն միայն նարնջագույն բույսերն ու ամենապարզունակ միաբջիջ կենդանիները:

Որքան էլ դա ցավալի լինի, մեր տիեզերական հարևանի վրա Երկրից թռած տիեզերագնացներին երբեք չեն դիմավորի մարսեցիները, որովհետև նրանք գոյություն չունեն:



ավելի է, քան մեզ մոտ՝ Մարսի վրա:

Երկիրը 1,5 անգամ ավելի մոտ է Արևին, քան Մարսը, նշանակում է Երկիրը ստանում է հրսկայական քանակության ճառագայթային էներգիա: Բավականին ճշգրիտ մեթոդներով որոշված է Երկրի ջերմությունը՝ +35°-ից մինչև —55°:

Հետազոտությունները պարզել են, որ Երկրի մակերեսի երկու երրորդը ծածկված է ջրի հաստ շերտով: Մնացյալ մեկ երրորդ մասը ցամաքն է, որը բոլորովին նման չէ Մարսի գրեթե իդեալական հարթություն ունեցող մայրցամաքներին: Մեր հարևան մոլորակի մթնոլորտը շատ հաստ է և ծանր, քան մերը:

## Վիրահատում առանց դանակի ու արյունահոսության

Բժշկության պատմության մեջ դեռևս չի եղել դեպք, որ բժիշկը հիվանդին վիրահատի... առանց դանակի: Բայց Կիրովականի հիվանդանոցներից մեկում տեղի ունեցավ մի զարմանալի գործողություն, որը մի նոր ասպարեզ է բացում բժշկության մեջ:

Հիվանդի լյարդում գտնվում էին քարեր, որոնք հեռացնելու համար անհրաժեշտ էր կտրել օրգանիզմի հյուսվածքները, բացել լյարդը... Ըստ որում այդպիսի վիրահատումը միշտ չէ, որ բարեհաջող է անցնում:

Որոշվեց օգտագործել երիտասարդ գիտնական Ջ. Դուրյանի ուլտրաձայնային ապարատը, որը հնարավորություն է տալիս, առանց վիրահատական միջամտության, բուժել հիվանդին:



...Սեղանի վրա պառկել էր հիվանդը: Նրա վրա կախված ապարատը շարունակ դժժում էր: Ուլտրաձայնի անտեսանելի ալիքներն անցնում էին հիվանդի օրգանիզմի միջով: Մոտ քսան րոպե անց, ուլտրաձայնը լյարդի քարերն արդեն դարձրել էր մանր ավազ, որը մի քանի օր հետո ինքն իրեն հեռացավ օրգանիզմից:



Ուլտրաձայնը մի փոքր միայն ջերմացնում է օրգանիզմի փափուկ հյուսվածքները, իսկ եթե նրա առաջ հայտնվում են կոշտ առարկաներ, ավյալ դեպքում քարեր, ապա դրանք անմիջապես փշրվում են:

Երիտասարդ գիտնականը շարունակում է աշխատանքները այդ ուղղությամբ: Շուտով նա կփորձարկի ուլտրաձայնային դանակը:

Սովորական գործողության ժամանակ, հարկ է լինում անզգայացնել վիրահատման դաշտը, օրգանիզմի հյուսվածքը կտրելուն պես՝ պայքարել արյունահոսության դեմ.

բժիշկը պետք է հետևի նաև գործիքների մաքրությանը, որովհետև օրգանիզմի մեջ կարող են թափանցել վտանգավոր բացիլներ:

Այս ամենի կարիքը չի զգացվում եթե օգտագործեն ուլտրաձայնային դանակը:

Իրականում դա բոլորովին էլ դանակի նման չէ: Ավելի շուտ հիշեցնում է սրածայր մատիտ: Այդ «մատիտով» բաց է թողնվում ուլտրաձայնի որոշակի հաճախականություն, որի ազդեցության տակ ոչ միայն կտրվում են հյուսվածքները, այլև անմիջապես մակարդվում է արյունը: Կտրելու ընթացքում ուլտրաձայնը թրմբեցնում է նյարդերը, և հիվանդը ոչ մի ցավ չի զգում: Բացիլներից վախենալու հարկ էլ չի լինի, որովհետև ուլտրաձայնը անմիջապես ոչնչացնում է դրանք:

**ԹԵՆ ՇԱՐԻ ՈՒ**

Արեգակնային համակարգության մոլորակներից ամենամոտը Երկիրն է, որը դարեր, հազարամյակներ առաջ մեր նախահայրերի համար եղել է կյանքի աստվածուհին: Երկրին մատուցվել են զոհեր, Երկրի համար հիմներ են երգվել... Հետագայում, երբ մեր մոլորակի վրա զարգացել է աստղագիտությունը, գիտնականների ուշադրության կենտրոնում եղել է մուք երկնակամարում փայլող Երկիրը: Եվ հիմա, երբ միջմոլորակային թռիչքները այլևս անհամանական երևակայություն չեն մեզ համար, հաստատ կարելի է պնդել, որ առաջին մոլորակը, ուր վայրէջք կկատարի մարսեցիների հրթիռանավը, կլինի Երկիրը:

Եվ որքան այդ օրը մոտենում է, այնքան մեզ անհանգստացնում է առայժմ անլուծելի մի հարց: Եթե Մարսի միջմոլորակային նավը միլիոնավոր կիլոմետրեր կտրելով, վայրէջք կատարի Երկրի վրա, արդյո՞ք մեր գիտնականները այնտեղ կհանդիպեն բանական արարածների, կամ թեկուզ կենդանիների: Արդյոք Արեգակի ընտանիքում ընդունվող մարսեցին միայնա՞կ է, թե՞ ունի տիեզերական մտածող հարևաններ:

Մինչև վերջերս տարածված էր այն կարծիքը, որ Երկրի վրա կյանք կարող է գոյություն ունենալ և նույնիսկ՝ արդեն կա:

Բայց եկեք չշտապենք:

Մարսը մոտ երկու անգամ փոքր է Երկրից: Այնտեղ ծանրության ուժը մոտ երեք անգամ

Անա այս ֆիզիկական պայմանները նկատի ունենալով, տեսնենք, արդյոք կարո՞ղ է կյանք լինել Երկրի վրա:

Եթե Երկրի մթնոլորտը պարունակում է նկատելի քանակությամբ թթվածին, որը մի քանի անգամ ավելի շատ է, քան մեզ մոտ, ապա այնտեղ բոլոր բույսերը անմիջապես կայրվեն, կօքսիդանան:

Բայց ենթադրենք, որ Երկրի վրա, համենայն դեպս, կյանք ստեղծվել է: Արդյո՞ք այդ կյանքը հարատև կլինի:

Երկրի վրա ջերմությունը երբեմն հասնում է 35 աստիճանի: Նշանակում է կենդանի օրգանիզմը այդ ջերմության տակ անմիջապես կխաշվեր:

Երկրի մթնոլորտում պարունակվող ջրային գոլորշիների առկայությունը նույնպես խոսում է այն մասին, որ մեր հարևան մոլորակի վրա կյանքը զարգանալ չի կարող: Գոլորշու այդպիսի քանակությունը կենդանի օրգանիզմին կործանավոր էր:

Ինչպես տեսնում եք ո՛չ ջերմությունը, ո՛չ մթնոլորտի բաղադրությունը ու ոչ էլ ջրի մեծ քանակությունը չեն կարող հաստատել այն անհիմն կարծիքը, որ իբր մեր տիեզերական հարևանի՝ Երկրի վրա կյանք կա:

Իհարկե, կարելի է ենթադրել, որ Երկրի հատկապես բևեռային շրջանները, ուր ջերմությունը մոտ 0 աստիճան է, կարող են անել այնպիսի պարզունակ բույսեր, ինչպիսիք մեր մամուռներն են: Բայց ենթադրել, որ հսկայական մայրցամաքները ծածկված են խիտ ու բարձր անտառներով, փաստորեն անլրջություն է:

Երկրի վրա ծանրության ուժը մոտ երեք անգամ ավելի է, քան մեզ մոտ և հնարավոր չէ պատկերացնել այնպիսի ծառարներ, որոնք չկոտրվեն այդ ուժի ազդեցության տակ:

Ես չեմ ուզում երկարացնել:

Կարելի է համոզված պնդել, որ մեր տիեզերագնացներին սպասում է մեռած ու տխուր մի աշխարհ: Երկրի վրա չկա կյանք, չկա բուսականություն: Արևի ճառագայթների տակ շիկացած գետին, ջրային անսահման ու միապաղաղ հարթություններ...

Որքան էլ ցավալի լինի, բացի մեր հարազատ մոլորակից՝ Մարսից, Արևի համակարգության ոչ մի մոլորակ բնակեցված չէ:

Մենք մենակ ենք...




ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

... Մտնում եմ:
— Ձեր տոմսը՞:
— Խնդրեմ:
— Մինչև ու՞ր. կայարան «Լուսի՞ն»
Այդքա՞ն մոտ,
Նստեցե՛ք:
Ահա և Մարսի տաքսին...

Սուրում ենք.
Երկնքում անծայր՝
Ցոլում են աստղերն այնքան պարզ.
Սուրում ենք.
Թվում է միայն
Թռիչքն այս մի չքնաղ երազ...

Երա՞զ է.
Ցնորք չէ. սակայն.
Երազ է,
Որ վաղը արդեն
Կդառնա մեր կյանքում այնքան
Առօրյա, կենսական պատկեր:

Թվում էր,
Դեռևս երեկ,
Հրթիռը տիեզերք ճեղքող.
Հյուլեով շարժվող սառցահատն էլ
Երազանք,
Գիտական ցնորք:

Բայց այսօր
Նայեցե՛ք. ճեղքվում է
Սառույցը հեռու-Հյուսիսի.
Սուրում են հրթիռներն արդեն,
Նկարում
Երեսները Լուսնի...
Իսկ վաղը հեռուն կթռչենք՝
— Մինչև ու՞ր.
Կայարան «Մա՞րս».
Այդքա՞ն մոտ...
Կարծում եմ ասածս
Իրական է և ոչ թե երազ:

Գիտության ու մտքի թևերով,
Դառնալով աշխատանք ու կամք,
Երազը մարմին առնելով՝
Հաղթորեն մտնում է կյանք...

## ՄԻՋԵՐԿՐԱԿԱՆ ԾՈՎԻ ՎԵՐԱՓՈԽՈՒՄԸ...

*Դեռևս անցյալ դարի 30-ական թվականներին ծնվել և քննարկման թեմա էր դարձել Հերման Զերգելի նախագիծը՝ Միջերկրական ծովի վերափոխման մասին: Մի քանի ամիս հետո այդ նախագիծը կստանա իրականություն:*

*Հայտնի էր, որ Ատլանտյան օվկիանոսից Ջիբրալթարի նեղուցով դեպի Միջերկրական ծով էր հոսում վայրկյանում 88 հազար խոր. մ. ջուր: Զերգելի նախագծի համաձայն, այժմ Միջերկրական ծովի մակարդակը իջեցված է 200 մետրով: Երբ պատրաստ լինեն Ջիբրալթարի և Դարդանելի նեղուցների վրա կառուցվող հիդրոէլեկտրակայանները, ապա դեպի Միջերկրական ծով հոսող ջրի ուժով հնարավոր կլինի ստանալ ավելի քան հարյուր միլիոն կիլովատ էլեկտրաէներգիա:*

*Իսկ ինչպե՞ս է իջել Միջերկրական ծովի մակարդակը:*

*Եթե ջրի ներհոսք չլիներ, ապա Միջերկրական ծովի մակարդակը գոլորշիացման հետևանքով տարվա ընթացքում կիջներ 1 մետր 65 սանտիմետր: Ամենից շատ ջուր հոսում է Ջիբրալթարի նեղուցով՝ տարեկան 2762 խոր. կմ: Սև ծովից Դարդանելի նեղուցով հոսում է 200 խոր. կմ: Բացի*




*այդ դեպի ծով են թափվում գետերը և մթնոլորտային տեղումները:*

*Ջիբրալթարի նեղուցի վրա կառուցվող ամբարտակի շնորհիվ ջրի ներհոսք նվազում է: Միջերկրական ծովի ջրային մակարդակը իջեցնելու համար կառուցված են ջրանցքներ, որոնցով ծովի ավելած ջուրը ուղղվում է դեպի Աֆրիկայի ցածրադիր տարածությունները և Սահարա անապատի կենտրոնում առաջանում է մի մեծ ջրավազան: Դրա հետևանքով, Սահարա անապատի 600 հազար քառ. կմ. տարածությունը դառնում է ոռոգելի և բերքատու:*

*Իր հերթին Միջերկրական ծովը խիստ կերպով փոխում է ափերի տեսքը: Ադրիատիկ ծովը շուտով կցամաքի: Սիցիլիա կղզին միացել է Իտալիային: Սարդինիա և Կորսիկա կղզիները արդեն միացել են իրար և մի առժամանակ հետո կմիանան մայր ցամաքին: Այս ամենը պարզ երևում է քարտեզի վրա: Ինչպես տեսնում եք, Միջերկրական ծովի քաշվելու հետևանքով առաջացել են հսկայական բերրի տարածություններ մոտ 600 հազար քառ. կմ. ընդհանուր մակերեսով:*

## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

*...համաշխարհային ժամանակը երկրագնդի բոլոր ժողովուրդների կողմից ընդունվեց արհեստական արևների՝ հելիոնների առեղծումից հետո: Հելիոնները վերացրին ցերեկվա և գիշերվա հակադրությունները: Համաշխարհային ժամանակի ընդունումը վերացրեց մի շարք թյուրիմացություններ, որոնք շատ հաճախ պատահում էին առօրյայում: Ծաղր բան է այսօր թվում այն հանգամանքը, որ մեր հայրերն ու պապերը, օրինակ, Երևանից Կալկաթա մեկնելու դեպքում ժամանակի հաշիվը ճիշտ պահելու համար ստիպված էին առաջ տանել ժամացույցի սլաքները:*

*...հելիոնների առեղծվելուց հետո բոլոր շինությունների տանիքներն ու պատերը պատրաստված են թափանցիկ պլաստմասսաներից, որոնք ընդունակ են բևեռացնել լույսը: Ճոճելով կամ տեղաշարժելով պլաստմասսայի թիթեղները կարելի է կարգավորել լույսի քանակությունը, և սենյակներում ստեղծել թույլ կամ ուժեղ լուսավորություն:*

*...մինչև օրս դեռ չի հնարված մի այնպիսի գործիք, որը լույսի նկատմամբ ավելի զգայուն լինի, քան մարդու աչքն է: Մինչև հիմա էլ բազմաթիվ լույսը, ակնթարթային լուսանկարները նկարվում են ոչ թե ապարատներով, այլ սովորական աչքով:*

*...երկրագնդի միակ կենդանին, որն ունի կապույտ արյուն, մեդուզայի նման մի ծովաբնակն է, որին շատ հաճախ կարելի է որսալ Ավստրալիայի մոտ գտնվող ծովերում:*

*...օճառի պատրաստման համար առաջին արհեստանոցը բացվել է Բաբելոնում՝ մոտ հինգ հազար տարի առաջ:*

*...սովորական մեղուն մեկ վայրկյանում թևերը թափահարում է 200 անգամ, իսկ աղավնին՝ 9:*



# ՊՍՏԻԿ ՃՍՏԻԿԸ ԵՎ ՄԵԾ ՃԱԿԱՏԱՄԱՐՏԸ

Փ. ՖԼԻՍՓԵԼ

Խաղալիքների խանութի ցուցափեղկում հանգիստ նստած էր ճստիկը: Բայց հանկարծ ուզեց աշխարհ տեսնել: Սուսուփուս ցած իջավ, անցորդների ոտքերի արանքից դուրս ծլկեց:

Կանգնեց ու միտք արեց, թե ինչ անի, որ ժամանակ չկորցնի: Տեսավ՝ շուրջը մեծ-մեծ ճանճեր են բզզում, իջնում իր կողքին: Կամացուկ մոտեցավ ու հոփ, բռնեց կանաչ-կապույտ մի ճանճի ոտքից: Սա վախից օդ բարձրացավ ու թը՜ռռ, գնաց:

Եկեղեցու գմբեթից թիթեղյա աքաղաղը ձայն տվեց.

Պստիկ մարդ,
Ճստիկ մարդ,
Ո՞ւր այդպես,
Տես՝ չընկնես:

Ճստիկն ուզեց պատասխանել, բայց չհասցրեց: Շատ արագ էին թռչում: Շուտով անցան քաղաքը, սկսեցին սլանալ դաշտերի ու մարգագետինների վրայով:

Հանկարծ օդում հայտնվեց ինչ-որ թռչուն: Սրա բաց կտուցը տեսնելուն պես ճստիկը լեղաճաք եղավ: Աչքերը փակեց ու ձեռքերը բաց թողեց: Երբ աչքերը նորից բացեց, նստած էր բարձի պես փափուկ մամռի վրա: Ուշքի չէր եկել, երբ կողքին կանգնեց մի մորեխ:

Ճստիկը չվախեցավ, քաջաբար հարցրեց.

— Այստեղ ի՞նչ կա ուտելու:

Մորեխը չպատասխանեց, բայց պողանման շոշափուկները դեսուդեն շարժեց, կարծես ցույց տալով իր մեջքը:

— Նստե՞մ: Հեծնել չգիտեմ, բայց կփորձեմ:

Ճստիկը հեծավ մորեխին ու բը՜զզ, թռան: Քիչ հետո մորեխը կանգ առավ, նորից շարժեց շոշափուկները:

— Իջնե՞մ: Լավ,— ասաց մարդուկը և ցած սահեց:

— Շնորհակալություն,— ավելացրեց նա, բայց մորեխը չլսեց, արդեն հեռացել էր:

Ճստիկը զարմանքով շուրջը նայեց: Ինչքան կանաչ թփեր կային, ինչքան շատ հատապտուղներ: Ճստիկը երկու ձեռքով թափահարեց թփերից մեկը: Պտուղները ցած թափվեցին: Բայց ա՜յ քեզ դժբախտություն, կեղևը հաստ էր, և քաղցած մարդուկը չէր իմանում, թե ինչ անի: Հետո գլխի ընկավ, սոճու ճյուղից պոկեց ասեղի պես սուր մի փուշ և թափով ծակեց պտուղը: Երբ փուշը դուրս քաշեց, քաղցր հյութ հոսեց: Ճստիկը կռացավ, ագահությամբ ծծեց: Կշտանալուց հետո վեր կացավ: Ոտքից գլուխ ներկվել էր մուգ-կարմիր գույնով, կարծես թանաքամանի մեջ էր ընկել:

Ճանապարհը շարունակեց: Շուտով տեսավ մի ահագին բլուր: Շուրջը անթիվ-անհամար փոքրիկ արարածներ էին վխտում:

— Ես ծտիկ չեմ,— խոր գլուխ տալով ներկայացավ մեր հերոսը:

Մեկը մոտեցավ.

— Մենք անտառային մրջյուններն ենք: Իմ անունն էլ Քաջիկ է:

— Շատ ուրախ եմ, շատ ուրախ,— շշնջաց ծտիկը:

Մեկ էլ այն տեսավ, որ բոլորն իրեն շրջապատել են և տնտղում են շոշափուկներով: Քաղցր հյութի հոտը նրանց խելքահան էր արել: Հանկարծ կատաղած վրա պրծան, ընկըսեցին լիզել ծտիկի ձեռքերը, ոտքերը, ամբողջ մարմինը:

— Խուտուտ մի տվեք, չեմ դիմանում,— ծըլվաց ծտիկը, բայց ո՞վ էր լսողը:

— Ինչ անուշ է,— փնչում էր Քաջիկը:

Ծտիկին բաց չթողեցին, մինչև չծծեցին հյութի վերջին կաթիլը, մինչև նա չստացավ իր նախկին գույնը: Ծտիկին այնպես էին լիզել, որ մաքրությունից փայլում էր:

— Գնանք, սիրելի բարեկամս, գնանք մեզ մոտ,— ասաց Քաջիկը:

Մրջնանոցի մուտքի առաջ պահակ կար կանգնած:

— Սա Կտրիճն է՝ մեր պահապանը,— բացատրեց Քաջիկը, շոշափուկներով ինչ-որ նշան արեց, և պահակը ճանապարհ տվեց:

Մտան բլրի ներսը: Նրանց մոտով շարունակ վազվզում էին մրջյունները, տեղափոխում ինչ-որ սպիտակ մանր ձվեր: Արևի տակ տաքացնում էին ու ներս բերում:

Ծտիկն այնքան էր հուզված, որ շփոթվեց ու ընկավ մի խոր փոս:

— Զգույշ,— ձայն տվեց Քաջիկը,— մեր տունը շատ սենյակներ ու մուտքեր ունի: Ուշքդ վրադ պահիր, թե չէ ոսկորներդ կջարդես:

Ներքևում մի մեծ խուց կար:

— Այստեղ թագուհին է ապրում,— կամացուկ ասաց Քաջիկը:

Դիմացը նստած էր մի մեծ մրջյուն: Երբեմըն-երբեմն ձու էր ածում: Ծառաներն իսկույն վերցնում էին, լիզում և դարսում առանձին խցում:

— Առաջ գնանք,— շշնջաց Քաջիկը:

Ահա և ձվարանը: Մրջյունները դես-դեն էին տանում ձվերը, թքով թրջում: Հետո տարբեր անցքերով դուրս էին գնում:

Մոտեցան մի ուրիշ խցի:

Ծտիկը հանկարծ վախեցավ: Դիմացը շարժվում էր միջատների մի ամբողջ կույտ:

Մրջյունները բերանները չպպացնելով խըժռում էին մանր բզեզներ, մորեխի կտորներ, որդեր:

Մի ուրիշ խցում ծտիկը տեսավ սպիտակ, խոշոր գնդեր: Մրջյունները շոշափում, շուռումուռ էին տալիս: Խնամողներից մեկն էլ բերանով ծակեց գնդերը: Միջից դուրս եկավ մի փոքրիկ մրջյուն, սկսեց իրեն մաքրել, կարգի բերել:

— Խենթուկ,— ձայն տվեց ծտիկը:

— Կամաց,— ասաց Քաջիկը և դուրս տարավ նրան:

Ճյուղից ճյուղ անցան, տերևից տերև:

— Սրանք ի՞նչ են,— հարցրեց ծտիկը ցույց տալով ինչ-որ կանաչ, անշարժ ընկած միջատներ:

— Մեր «ոչխարներն» են,— պատասխանեց Քաջիկը, վրա ընկավ, սկսեց խմել դեղին, ոսկեգույն հյութը, որ ծորում էր այդ արարածների մարմիններից:

Ծտիկը մնաց ապշած, միջա՛տն էլ միջատին կթի:

Քաջիկն այնքան ծծեց, որ փքվեց:

— Բավական է,— բարկացավ ծտիկը:

Մրջյունը շարունակեց իր գործը:

— Բավական է, լափես,— գոռաց ծտիկը և քաշեց նրա ոտքից:

Մրջյունը զայրացած ետ դարձավ, բերանը բացած վրա տվեց: Ծտիկը վախեցած ետ-ետ



գնաց ու թըրմփ ընկավ գետին: Եթե մամռուն ու տերևները չլինեին, նրա բանը բուրդ կլիներ: Բայց բախտը բերեց, այս անգամ էլ ողջ մնաց:

Քիչ հետո հայտնվեց Քաջիկը, բացատրեց, որ մրջյունների մի մասը կերակրում է դրսում աշխատողներին: Ոչ ոք շատակերություն չի անում: Եվ իսկապես, Ճատիկը համոզվեց, որ բոլոր փքվածները կերակրում են մյուսներին:

Ճատիկի բարկությունն անցավ: Պառկեց մի զով տեղ, գլուխը դրեց մամռե բարձին, ուզեց քնել: Բայց աչքը դեռ չէր փակել, երբ հուզված մոտեցավ Քաջիկը:

— Գիտես ի՞նչ, ավազակ-մրջյուններն էլի մեր կողմերն են գալիս: Հիմա մեզ վրա կհարձակվեն: Շուտ արա, գնանք:

Ճատիկը վեր թռավ, և նրանք շտապեցին մրջնանոց: Ճանապարհին Քաջիկը ասաց.

— Այդ ավազակների ամրոցը մարգագետնի եզրին է, մի մեծ քարի տակ: Շուտ-շուտ հարձակվում են մեզ վրա, ավար տանում ձվեր ու թրթուրներ: Գերի ընկած մրջյուններին ստրկացնում են:

Ձվերն ու թրթուրները թաքցրին մրջնանոցի խորքում, մուտքերը փակեցին: Հետո բլրի շուրջը կենդանի շղթա կազմեցին: Ճատիկը սուր փշեր հավաքեց:

Երևաց հարձակվողների զորքը: Ճատիկը կռացավ, պատրաստ պահեց փշերը: Բերանները լայն բացած՝ վրա տվին ավազակները: Հենց որ առաջին հարձակվողը մոտեցավ, Ճատիկը վեր թռավ, ամբողջ ուժով հարվածեց նրա գլխին: Փշե նիզակը թշնամուն ետ շպրտեց: Ավազակները նորից գրոհեցին: Ճատիկը նիզակահար արեց շատերին: Զորքը մի քիչ ետ քաշվեց, բայց գրոհեց մյուս կողմից: Ճակատամարտը բորբոքվում էր մեկ այստեղ, մեկ այնտեղ: Մի քանի տեղ պաշտպանության օղակը ճեղքվեց, և ավազակախումբը նետվեց դեպի մրջնանոցի մուտքերը: Բայց այստեղ հերոսաբար էին կռվում պահապանները: Սրանք ոչ միայն մեծ գլուխներ ունեին, այլև մեծ, զորավոր աքցաններ: Նրանց օգնում էր Քաջիկն իր ընկերոջ՝ Կորիճի հետ: Երկուսն էլ առյուծի նման էին կռվում: Մինչև Կորիճը գետին կտապալեր ավազակներից մեկին, ինչ-որ մեկը թռավ նրա մեջքին և թրի պես կտրեց, դեն գցեց մարմնի հետին մասը: Կորիճը ետ դարձավ, կծեց ավազակի գլուխն ու դեն շպրտեց: Մարմնի կեսը չկար, բայց Կորիճը շարունակում էր կռվել, կարծես ոչինչ չէր պատահել:

Ճատիկը շարունակում էր աջ ու ձախ հարվածներ տեղալ, սպանել ավազակներին:

Վերջապես ավազակների զորքը ետ քաշվեց, դիմեց փախուստի: Ճատիկը մի քիչ հետապնդեց նրանց և ետ եկավ:

Քաջիկը մոտ վազեց:

— Դու հերոսաբար էիր կռվում և մեզ շատ օգնեցիր: Շնորհակալություն:

Կորիճին նայելով նա տխրությամբ ասաց.

— Խեղճ տղան մի երկու օր էլ կապրի, իսկ հետո... հետո քաղցից կմեռնի:

Ճատիկը մի քանի օր էլ մնաց մրջնանոցում, օգնեց, որ վերացնեն պատերազմի հետևանքները, հետո հրաժեշտ տվեց:

Քաջիկը նրան ճանապարհ դրեց: Քիչ անց նրանք բաժանվեցին:

Ճատիկը մնաց մենակ: Գնաց, մեկ էլ տեսավ, որ թփերի միջից ինչ-որ բան է փայլում: Զգուշորեն մոտեցավ: Ի՞նչ կարող է լինել: Առու էր: Ուրախ-ուրախ վազում էր անտառի միջով: Ա՜յ քեզ հաջողություն:

Ճատիկը թռավ կանգնեց տերևներից մեկի վրա, և հոսանքը նրան առաջ տարավ:

*Գերմաներենից փոխադրեց՝ Գ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*



Նկ. Ա. ԳԱԼԵՆՑԻ

# ԱՇԽԱՏԱՍԵՐ ՄԱՆՈՒԿՆԵՐ

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Արտաշատի և Վեդու
Աշխատասեր մանուկներ,
Ձեր դաշտերին կենսատու
Ծածկել կիջնի ցուրտ ձմեռ:
Մռայլվում է պարզ հեռուն,
Զարմանում են թուփ ու ծիլ.
Դուք չթողներ դաշտերում
Բամբակի ոչ մի փաթիլ:
Խնդությամբ ձեր խորքին,
Եվ ավյունը մանկական
Տվեք ճերմակ դաշտերին
Ձեր երազի մեջ անգամ:
Ջանադրեցեք շարունակ
Ամեն, ամեն կիրակի,
Որ շարեր սա երփներանգ
Գործարանը Երևանի:
Աշնան օրերն այս վերջին,
Եղյամոտ ու երազուն
Ձեր դաշտերի ականջին
Նոր ձյան մասին են խոսում:
Ջանադրեցեք, մանուկներ,
Առավոտից իրիկուն,
Որ չլինի ձյունը ձեր
Դեռ չքնած վերարկուն:

Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ




ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ

Զարմանալի է, շատ զարմանալի. փոքրիկ աղջի՞կն էլ այդքան երազ տեսնի: Եվ տեսնելուց հետո էլ քնի մինչև առավոտ, հետո վեր կենա ու մայրիկին պատմի բոլորը՝ մեկ առ մեկ...

Զարմանալի է... Այդ ինչպես էլ միտքն է պահում բոլոր երազները... Հայրիկն ու մայրիկն էլ են երազ տեսնում, եղբայրն էլ, բայց ոչ մեկը առավոտյան չի կարողանում պատմել, թե ինչ է տեսել... Իսկ Լիլիթը...

Ա՛յ, մի անգամ առավոտյան մայրիկը ձեն տվեց, իսկ Լիլիթը վերմակը մի կողմ գցեց, աչքերը դեռ փակ նստեց անկողնու մեջ ու սկսեց լաց լինել:

— Ի՞նչ է եղել, Լիլիթ,—հարցրեց մայրիկը:

— Ու՜... ու...

— Ինչու՞ ես լալիս:

— Ու՜... ըհը՛, ըհը՛...

— Ասա՝ տեսնեմ ի՞նչ է պատահել:

— Մա՜-մա՜... ջա՜ն...— ավելի բարձրաձայն շարունակեց Լիլիթը:

Մայրիկը տարակուսած նայեց հայրիկին: Հայրիկը ուսերը վեր քաշեց, իբր թե չի իմանում Լիլիթի լացի պատճառը: Իսկ առաջին դասարանցի Ստեփանն ուտելը կիսատ թողած, նայում էր քույրիկին ու անձայն ծիծաղում:

— Ու՜...—զլեց Լիլիթը:

Լիլիթը շատ խորամանկն է: Նա եղբոր ծիծաղը չէր լսում, բայց աչքերը փակ էլ գիտեր, որ եղբայրը հիմա իր վրա է ծիծաղում:

— Ուհու, ուհու, ուհու՜... ու... ը...— արդեն առանց արցունքի ողբում էր Լիլիթը:

— Ախր ի՞նչ ես ուզում,—ջղայնացավ մայրիկը:

— Գլխարկ եմ ուզո՜ւմ...

— Ի՞նչ գլխարկ:

— Գլխա՜րկ...

— Մի վեր կաց, հետո գլխարկ ուզի...

— Չե՜մ... գլխարկ եմ ուզու՜մ...

Մայրիկն ուսերը վեր քաշեց, գնաց ու ինչքան գլխարկ կար պահարանում բերեց:

— Ա՛ռ,—կարճ ու կտրուկ ասաց նա և մի գլխարկը մեկնեց Լիլիթին:

Լիլիթն իսկույն բաց արեց աչքերը, գլխարկը տեսավ ու մի կողմ հրեց:

— Չէ՜...



Մայրիկը մի ուրիշը տվեց։
— Չէ՛... դա չի՛...
Մայրիկը երրորդ գլխարկը ցույց տվեց։
— Սա՞ ես ուզում։
— Չէ՛... երեկվա առածդ եմ ուզում...
— Ա՛յ աղջի, ես երեկ ե՞րբ եմ գլխարկ առել քեզ համար։
— Հա՛, բա որ գնացինք խանութ ու առար... կարմիր, սիրուն գլխարկ...

Մայրիկն ապշած կանգնել էր ու չգիտեր՝ ծիծաղե՞ր, թե՞ բարկանար։ Այդպիսի գլխարկ Լիլիթի համար նա չէր գնել, երբեք չէր գնել, ո՛չ երեկ, ո՛չ մյուս օրը, ոչ էլ անցյալ կիրակի. սա որտեղի՞ց է հնարել...

— Վե՛ր կաց, վե՛ր կաց,— ձայնը ցածրացրեց մայրիկը։

Լիլիթը գիտեր. մայրիկի ձայնը որ ցածրանում է, հետո կամաց-կամաց պիտի բարձրանա ու...

Աղջիկը ոտքերը կամացուկ իջեցրեց անկողնուց, բայց արցունքը նորից ցայտեց աչքերից։

— Ես այդ տեսակ բան չեմ առել քեզ համար, Լիլիթ... Երազու՛մ ես տեսել, ինչ է։

Լիլիթը ձեռքն աչքերից իջեցրեց և շրթունքներն ուռցնելով քթի տակ ծոր տվեց.

— Երազու՛մ... որ երազում է, բա չե՞ս առնի...

Մայրիկը հանկարծ ժպտաց. նայեց հայրիկին ու սկսեց ծիծաղել։ Բոլորն էլ ծիծաղեցին, իսկ հայրիկը, որ արդեն փողկապն էր կապում, մոտեցավ աղջկան, գրկեց ու ասաց.

— Ա՛խ դու խորամանկ... երազում ես տեսել, հա՞...

Լիլիթն սկզբում զարմացած աչքը գցեց նրանց վրա ու ինքն էլ ծիծաղեց։

Մանկապարտեզի ճանապարհին Լիլիթը նկարագրում էր երազում տեսած գլխարկը և այն խանութը, որտեղ մայրն առել էր գլխարկն, ու անդադար՝ մամա ջա՛ն, մամա ջա՛ն ասելով, խնդրում մորը, որ այդպիսի մի գլխարկ առնի իր համար։

Երբ նրանք բաժանվեցին, Լիլիթը մոտեցավ մանկապարտեզի դռանը, ետ նայեց և անուշիկ ժպիտը դեմքին բացականչեց.

— Հա՞...

Մայրը գլխով արեց.

— Հա, հա, կառնեմ...

## ԽԵԼՈՔ ՎԱՆԻԿԸ

Ռ. ՄԻՐԶՈՅԱՆ

Աշխատում է Վանիկը,
Իսկ ժիր, աշխույժ շնիկը
Հանգիստ չունի իր տեղում,
Քաշքշում է թևերից.
— Ինչո՞ւ ինձ հետ չես խաղում,
Մոռացե՞լ ես արդեն ինձ:
— Մի խանգարիր, շնիկ ջան,
Չե՞ս տեսնում, որ իսկական,
Մեծ հրթիռ եմ պատրաստում...
Ի՞նչ է, ինձ չե՞ս հավատում:
Ա՛յ, կտեսնես, միասին
Թռչելու ենք մենք լուսին:



Նկ. Հ. ԳԱԲՈՒԶՅԱՆԻ

# ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

ԳԵՎՈՐԳ ԳԵՂԱՄԻՆԻ



Հէնց տաքացավ,
Վեր բարձրացավ.
Տաքը անցավ՝
Տեղը դարձավ:

(Սենյակի ջերմաչափ)

Երեք ոտանի.
Հարյուր մատանի.
Մատերին մատ տաս՝
Նա ձայն կհանի:

(Դաշնամուր)





Այն ի՞նչ դուռ է, որ մարդը
Շատ է փակում ու բացում,
Բայց իր կյանքում 'նա երբեք
Այդ դռնով ներս չի անցնում:

(Զգեստապահարան)



Թռիր հեծիր.
Թռիր անցիր.
Բայց ոչ լծիր.
Ոչ էլ բարձիր:

(Մարզական ձի)



Թևերը կանգնած.
Բերանը բացած.
Լցվում է մինչև՝
Դատարկվում քիչ-քիչ:

(Կճուճ)





Մարմինը կարմիր,
Իսկ գլուխը սև.
Ոտքերը ծանր,
Իսկ ինքը թեթև:

(Կրակ)

Հազար աչք ունի.
Մի բերան նախ.
Հէնց հացը հասավ,
Նա հանդես կգա,
Ինչքան տաս կուտի՝
Դարձյալ անոթի:

(Մաղ)



Նկ. Ս. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը և համարի գեղարվեստական ձևավորումը նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



Նկ. Կ. ՀԱՅԱԳՈՐԾՅԱՆԻ



1-ից մինչ 9 նիշերը տեղադրեք շրջանակների մեջ այնպես, որ մի գծի վրա գտնվող երեք նիշերի գումարը հավասար լինի 18-ի:




Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Ռ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер“ на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 03424. Պատվեր 1394: Տպաքանակ՝ 6500: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 5/X 1960 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91:

Գինը 2 ռ.







## ՈՂՈՐՄԱԾ ՕՐԵՆՔ

*Մի պետության մեջ այսպիսի սովորույթ կար: Մահվան դատապարտված ամեն մի հանցագործ, մահապատժից առաջ վիճակ էր հանում, որը նրան փրկության հույս էր տալիս: Մի արկղիկի մեջ դնում էին թղթի երկու կտոր, մեկը «Կյանք», մյուսը՝ «Մահ» մակագրությամբ: Եթե դատապարտվածը հանում էր «Կյանք» մակագրությամբ թուղթը, ապա ներում էր ստանում, իսկ եթե դժբախտություն էր ունենում «Մահ» մակագրությունը հանելու, ապա դատավճիռը ի կատար էր ածվում:*

*Այդ երկրում ապրող մի մարդու նրա թշնամիները զրպարտել էին, և դատարանը այդ դժբախտին դատապարտել էր մահվան: Այդ դեռ քիչ է, թշնամիները չէին էլ ուզում անմեղ [illegible] դատապարտվածին փրկության թեկուզ ամենափոքր հնարավորություն թողնել: Մահապատժի նախօրյակին, գիշերով նրանք թաքցրին արկղիկը և «Կյանք» մակագրությամբ թուղթը փոխեցին «Մահ» մակագրությամբ թղթով: Այժմ, դատապարտվածը, որ թուղթն էլ հաներ, մահից չէր խուսափելու:*

*Այդպես էին մտածում նրա թշնամիները: Բայց նա բարեկամներ էլ ուներ, որոնք իմացել էին նրա թշնամիների դավերը: Նրանք գաղտագողի մտան բանտը և դատապարտվածին նախազգուշացրին, որ արկղում երկու թղթի վրա էլ «Մահ» մակագրություն է: Բարեկամները համոզում էին դժբախտին դատավորների առաջ բաց անել թշնամիների կեղծիքը և պնդել, որ արկղը ստուգեն:*

*Բայց, ի զարմանս իր բարեկամների, դատապարտվածը խնդրեց իր թշնամիների այդ արարքը խիստ գաղտնի պահել, հավատացնելով, որ այդ դեպքում ինքը կփրկվի: Նրա բարեկամները սկսեցին մտածել, թե խեղճը խելքը թռցրել է:*

*Առավոտյան դատա-*



Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ

*պարտվածը ոչինչ չասելով դատավորներին, վիճակ հանեց և ազատ արձակվեց:*

*Ինչպե՞ս հաջողվեց նրան, այդպես բարեհաջող դուրս գալ անհուսալի վիճակից:*





*Այս ֆիգուրը բաղկացած է եռանկյունիներից, քառանկյունիներից և հնգանկյուններից: Մատիտով երեք ուղիղ գիծ տարեք այնպես, որ բոլորը դառնան եռանկյունիներ:*





## ՏԵՂԱԴՐԵՔ ՏԱՌԵՐԸ

Քառանկյունուց դուրս փոքրիկ քառակուսիների վրա գրված են տառեր. այդ քառակուսիները դասավորեք մեծ քառանկյան փոքր քառակուսիների վրա այնպես, որ կարդացվի՝

1. Աշխարհահռչակ սովետական սպորտսմենի անունը:
2. Հայ ռևոլյուցիոներուհի:
3. Գունավոր մետաղ:
4. Օդի տատանում:

Այդ 4 անունները պետք է կարդացվեն և՛ հորիզոնական, և թե ուղղահայաց:

**Առաջարկ՝ Ռ. Գալստյանի**





Ծառեր

ՍԵՐՎԵՆՏ ՊՈՂՈՍՅԱՆ
(Երևանի Չարենցի անվան
դպրոցի 6-րդ դաս. աշակերտ)



Վ. Ի. ԼԵՆԻՆ (քանդակ)

# ԽՈՍՏՈՒՄՆԱԼԻՑ

Բաց են նրա դռները բոլորի առաջ, բոլոր շնորհալի մանուկների: Ահա գալիս են նրանք՝ կարմիր վզկապներով, աստղիկներով: Ոմանք նկարչական ալբոմներ ունեն, ոմանք թառ կամ ակորդեոն, ոմանք էլ ուղղակի այնպես, մի տետրով կամ նույնիսկ առանց դրա: Սրանք էլ հենց փոքրիկ քանդակագործներն են, դաշնակահարները, գուցե և պատանի բանաստեղծները: Առավոտից երեկո եռուզեռ է այնտեղ: Հնչում են երաժշտական գործիքները, ճմլվում ու ձև է ստանում պլաստիլինի զանգվածը, ճերմակ պաստառին ասեղի ծայրից հայտնվում են ալ կակաչներ, մարզվում է վրձին բռնող անփորձ ձեռքը կամ փոքրիկ պարուհու բարալիկ իրանը:

Բայց ինչո՞ւ միայն Երևանի Պիոներների պալատի սաները: Որտե՞ղ ասես չկան շնորհալի պատանիներ ու աղջիկներ, ո՞ր քաղաքի կամ գյուղի դպրոցում: Օլիմպիադայում լինի, թե ճամբարային հանդեսներում,



ՌԱԶՄԻԿ ՂԱԶԱՐՅԱՆ
(Երևանի № 29 դպրոցի 7-րդ դաս. աշակերտ)





Գարուն ԱՐՓԻԿ ՂԱՓԼԱՆՅԱՆ
(Լենինականի № 4 դպրոցի 3-րդ դաս. աշակերտուհի)

## ԲՈՂԲՈՋՆԵՐ

դպրոցականների ցուցահանդեսում, թե մանկական մամուլի էջերում. ամենուրեք աչքի են ընկնում նրանք՝ մանկական մտքի ու երևակայության առաջին բողբոջներով:

Հիացմունքով ենք ընդունում նրանց ստեղծած նկարները, նրանց գրած բանաստեղծությունները ու պատմվածքները, նրա՞ց պատրաստած մոդելները:

Եվ այս անգամ էլ ահա, նրանցից մի քանիսը հանդես են եկել մեր ամսագրի էջերում: Սա էլ մեր շնորհալի մանուկների նվերն է սիրելի Հայաստանի 40-ամյա հոբելյանին:

Սիրելի դպրոցականներ, գրեցեք ձեր կարծիքը տպագրված գործերի մասին, և եթե դուք էլ եք ոտանավորներ ու պատմվածքներ գրում, դուք էլ եք նկարում կամ երգեր հորինում, ուղարկեցեք մեզ ձեր գործերը. դրանցից լավագույնները մենք կտպագրենք:



ՍԵԴԱ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
(Լենինական, Անդրերկաթուղու № 39 դպրոցի 7-րդ դաս. աշակերտուհի)

### ԳԱՐՈՒՆ

Փայլում է պայծառ
Արևը գարնան.
Ահա դաշտ ու սար
Նորից կյանք առան:

Բացվում են, ծաղկում
Ծաղիկներ վառ-վառ.
Երգում են այգում
Թռչուններ կայտառ:

Անտառը զուգվում
Թավիշ կանաչով,
Առվակն է երգում
Անուշ կարկաչով:

## ՓՈՔՐԻԿ ԱՂՋԻԿԸ

Ես դռան մոտ կանգ եմ առնում ու նայում ժամացույցին: Ութն անց է քսանհինգ րոպե: «Ուշանալու եմ» — մտածում եմ ու վազելով իջնում բակ: Դիմացի պատշգամբից ինչ-որ բան ծամելով դուրս է գալիս Ռուլանդը: Նա ողջունում է ինձ՝ շարժելով ձեռքի ոլորուն թուղթը: Ես ի պատասխան թափահարում եմ ձեռքս և վազում:

Աղբարկղի մոտ կանգնած է Վառվառա Միխայլովնան: Նա երևի, ըստ սովորության, դիտել էր իր դեմքը փոքրիկ հայելու մեջ և, տեսնելով քթին կուտակված պուդրայի շեղջը, բամբակով հարթեցնում է:

— Բարև ձեզ, Վառվա՛ռա Միխայլովնա:

— Բարև՛, աչիկ ջան:

— «Աչիկ»— կրկնում եմ ինքս ինձ: Մի՞թե ես այդպես փոքր եմ:

Դուրս եմ գալիս փողոց: Ցուրտ քամի է փչում: Մի կին ցախավելով մաքրում է փողոցը: Մի պահ կանգ եմ առնում՝ որոշելու, թե որ ճանապարհով գնամ: «Լավ է քայլել մարդաշատ պողոտայով,— մտածում եմ ես,— երբ օրը արևոտ է ու տրամադրությունդ բարձր: Բայց այժմ քամի է և, բացի այդ, դասից եմ ուշանում»:

Արագացնում եմ քայլերս:

Այս ճանապարհով ես դպրոց եմ գը-



**ԱՐՇԱԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ**
(Երևանի Շիրվանզադեի անվան դպրոցի 6-րդ դաս. աշակերտ)



*Մայիսի 1-ը մեր բակում*

նում, երբ տխուր եմ, ինչ-որ բանից դժգոհ ու երբ մեղմ անձրև է մաղում։ Այդ ժամանակ ես քայլում եմ դանդաղ ու ոչ ոքի չեմ նայում։ Այսօր ես գնում եմ այդ ճանապարհով, որովհետև ուշ է, որովհետև այդ ճանապարհը ավելի կարճ է, թեկուզ և զառիվայր։ Այսօր ես ուշադիր շուրջս եմ նայում։ Ամեն ինչ ինձ պատճառում է հետաքրքրություն և թախիծ։ Ե՛վ հողե տափակ կտուրներով տները, և՛ մերկ ծառերը, ու նույնիսկ չորացած արևածաղիկների ցողունները։ Դա գուցե նրանից է, որ ես այդ ճանապարհով դպրոց եմ գնում, երբ տխուր եմ և ոչնչի վրա ուշադրություն չեմ դարձնում։ Հետզհետե բարձրանալը ավելի է դժվարանում։ Ես կանգնում եմ։ Ինձ հետ կանգնում է, կարծես, և քամին, որ ամբողջ ժամանակ ուղեկցում էր ինձ։ Ահա դույլերը ձեռքին աղբյուր է գնում մեր դասարանցի Վարդենիկի մայրը։

Ես բարևում եմ նրան։

— Մյուս ճանապարհով գնա,— ասում է նա։



**ՖԵՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ**
(Երևանի Հակոբյանի անվան միջնակարգ դպրոցի աշակերտուհի)

— Ուշանում եմ։
— Դեռ տասը րոպե կա,— ասում է նա։
— Ինչպե՞ս... Ձեր ժամացույցը երևի սխալ է։
— Դժվար թե... Եվ նա կանչում է աշխատանքի շտապող հարևանին։
— Գեղա՛մ։
— Ի՞նչ է, հարևան։
— Ժամը քանի՞սն է։
— Ութն անց է քսան։
Ես շնորհակալություն եմ հայտնում և շարունակում գնալ։
Ուրեմն մեր ժամացույցն է սխալ եղել։
Դե, իհարկե, երեկոյան մայրիկը ասաց, որ հարկավոր է ուղղել։ Ինչպե՜ս էի մոռացել։
Բայց ես դժգոհ չեմ, որ հայրիկը չի ուղղել ժամացույցը։ Ինչո՞ւ։ Չգիտեմ։ Ահա ծանոթ դուռը։ Ես մտնում եմ մի բակ։ Հարկավոր՝ է կտրել-անցնել բակը ու իջնել աստիճաններով։ Քիչ այն կողմ դպրոցն է։ Գոհարը պայուսակը ձեռքին շտապում է։ Մի պահ ուզում եմ կանչել։ Բայց ո՛չ թող գնա։
Ճռռալով բացվում է բակի միակ տան դուռը ու դուրս է գալիս մի փոքրիկ աղջիկ։
— Ո՞ւր ես գնում,— հարցնում է նա։
— Դպրոց։
— Իսկ մեր Աշոտը չի գնում։— Եվ հարցնում է.— դու ընկեր Նվարդի դասարանի՞ց ես։
— Ոչ։
— Իսկ ո՞ւմ,— և չսպասելով պատասխանի, նորից կրկնում է,— իսկ մեր Աշոտը դպրոց չի գնում։ Ընկեր Նվարդը հիվանդ է։
Ես շոյում եմ նրա սև գանգուրները։
— Ի՞նչ է քո անունը,— հարցնում է նա։
— Կարինե։
— Դե, դու հարցրու՝ իմ անունը ի՞նչ է։
— Քո անունը ի՞նչ է,— հարցնում եմ ես։
— Գայանե.
— Լավ անուն է։
Ես անասելի հոգնածություն եմ զգում և հանկարծ նստում եմ նրա կողքին՝ քարի վրա։
Աղջիկը նստում է ինձ մոտ ու իր փայլփլող աչիկները հառում է ինձ։ Հաճելի է նստել ծեր թթենու տակ ու նայել, թե ինչպես վարդագույն աղջամուղջից դանդաղ բարձրանում է արևի հրաշեկ գունդը։
— Իսկ մեր Աշոտը դպրոց չի գնում։
«Ի՞նչ, դպրո՞ց»։
Ես արագ ոտքի եմ կանգնում։
— Գայանե, որտե՞ղ ես,— կանչում է մի պառավ։
Դպրոցից ինձ է հասնում զանգի թույլ ղողանջը։
Ես վերցնում եմ պայուսակս ու վազում։





ՍԵՐԳԵՅ ԴԱՆԻԵԼՅԱՆ
(Երևանի Րաֆֆու անվան դպրոցի 7-րդ դաս. աշակերտ)

Աշնանային նատյուրմորտ





ՎԱՐԱԶԴԱՏ ՊԵՏՐՈՍՅԱՆ
(Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի 7-րդ դաս. աշակերտ)



ԳԱՅԱՆԵ ՄԱՆՈՒԿՅԱՆ
(Երևանի Կրուպսկայայի անվան դպրոցի 7-րդ դաս. աշակերտուհի)

# ՏԵՐԵՎԸ

*Երբ Աշունը եկավ, կանչեց իր բոլոր տերևներին և ասաց.*

*— Շուտով կգա իմ ավագ եղբայրը՝ Ձմեռը, և թափ կտա իր սպիտակ գորգը։ Ես ձեզ կտամ գույնզգույն զգեստներ, դուք կնստեք իմ քրոջ՝ Քամու թևին և կթռչեք հեռու երկրներ։ Տալիս եմ ընդամենը երկու օր ժամանակ, հրաժեշտ տվեք ձեր մորը և պատրաստվեցեք մեկնելու։*

*Տերևները լուռ լսեցին և ցրվեցին տները։ Միայն ամենափոքրիկ Տերևը սկսեց գանգատվել։*

*— Իսկ եթե մայրիկս ձմռանը տխրի՞, Ես չեմ գնա։*

*Բայց ոչ մեկը նրան չլսեց։ Տերևները արդեն պատրաստվել էին և սպասում էին քամուն, Նրանք հագել էին Աշնան նվիրած կարմիր, դեղին, ոսկյա զգեստները։ Փոքրիկ Տերևի քույրերն ու եղբայրները շատ համոզեցին նրան իրենց հետ թռչել, բայց նա համառորեն մերժում էր։ Վերջապես եկավ Քամին։ Տերևները համբուրեցին իրենց մորը և նստեցին Քամու թևին։ Իսկ փոքրիկ Տերևը կախվեց մոր պարանոցից և սկսեց հեկեկալ.*

*— Ես չեմ ուզում գնալ։*

*Իզուր անցավ թե Քամու, թե տե-*

րեների աղաչանքը։ Տեսնելով, որ Տերևին չեն կարողանում համոզել, նրանք թռան։

Եկավ Ձմեռը։ Նա իր երկար մորուքով սպառնում էր.

— Ա՜խ դու անպիտան, ես քեզ ցույց կտամ։

Եվ Ձմեռը ինչքան ուժ ուներ, փչեց։ Փոքրիկ Տերևի արցունքները սառեցին, բայց նա ավելի ամուր սեղմվեց իր մորը։ Ձմեռը բարկացավ և բարկությունից լաց եղավ։ Սկսեց անձրև գալ։ Ամպերի տակից ժպտաց արեգակը։ Սառույցը հալվեց, և Տերևը լաց եղավ ուրախությունից։ Այնքան տաք էր դրսում, այնքան ջերմ, որ Տերևը մոռացավ իր տանջանքները։ Նա մնացել էր ձյան տակ, սառել, բայց մորից չէր հեռացել։ Տերևը նայեց ուրախությունից ծաղկած մորը, որը շրջապատված էր իր կրտսեր որդիներով և մտածեց.

— Այժմ մայրիկս մենակ չէ, ես կարող եմ հանգիստ գնալ։

Ապա նայեց շուրջը, հառաչեց և ցած ընկավ։

Եվ ոչ ոք նրան չտեսավ։

ԱՐՏԱՎԱԶԴ ՆԱԶԱՐՅԱՆ
(Մարտունու շրջանի Թագագյուղի 7-ամյա դպրոցի 6-րդ դաս. աշակերտ)

## ՀԱՅՐԵՆԻՔԻՍ ԳԵՐԲԸ

Տե՛ս, ինչ վա՜ռ է, հուրհրան
Հայրենիքիս գերբն անգին.
Ո՜նց են գրկել, տե՛ս, նրան
Եղբայրները տասնհինգ։

Մուրճ ու մանգաղ ամրակուռ
Արևից վառ են փայլում,
Ստեղծագործ ու հանուր
Աշխատանքի մեզ կանչում։

Ահա աստղը հնգաթև,
Ե՛վ հաղթական, և՛ հպարտ.
Նա է ամբողջ աշխարհի
Միասնությունը անխախտ։

Նա մեր սիրտն է, մեր հոգին
Եվ ավյունը սխրանքի.
Նա է ոսկե բանալին
Երջանկության ու կյանքի։



Աղջիկ



ԱՐԱՅԻԿ ՍԱՀՅԱՆ
(Երևան, 6 տարեկան)





## ԵՐԵՎԱՆԻ ՊԱՏԱՆԻ ՏԵԽՆԻԿՆԵՐԻ ԿԱՅԱՆՈՒՄ

1. ՆԻԿՈՂՈՍ ՄԱՐՏԻԿՅԱՆԸ (№ 89 դպրոց), ՎԼԱԴԻՄԻՐ ՄԿՐՏՉՅԱՆԸ (Մայակովսկու անվան դպրոց), ՍՏԵՓԱՆ ՇԱՀԲԱԶՅԱՆԸ (№ 65 դպրոց), ՍՏԵՓԱՆ ՋԱՏԻԿՅԱՆԸ (Նալբանդյանի անվան դպրոց) ստուգում են ճեռնային լամպի վրա հավաքած վոլտմետրի աշխատանքը։

2. ՎԼԱԴԻՄԻՐ ՄԱՉՅԱՆԸ (Կիրովի անվան դպրոց) և ԼՈՐԻՍ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆԸ (Պուշկինի անվան դպրոց) պատրաստում են նավի մոդել։

3. № 37 դպրոցի աշակերտ ՍԱՀԱԿ ՍԵԴՐԱԿՅԱՆԸ փորձարկում է սեփական ձեռքով պատրաստած տարածության վրա գործող էլեկտրատրակտորը։

4. Շևչենկոյի անվան դպրոցի 6-րդ դասարանի աշակերտ ԼԵՎՈՆ ԱՆԱՆՅԱՆԸ ՏՈՒ—114 ինքնաթիռի մոդելը պատրաստելիս։



ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ ՏԱՆՅԱ
(Լենինական, Անդրեևկի-թուղու № 39 դպրոցի 7-րդ դաս. աշակերտուհի)

### ՀԱՅՐԵՆԻՔԻՍ

Երջանիկ ենք մենք ու հպարտ,
Որ ապրում ենք ուրախ-զվարթ,
Սովորում ենք, խնդում, երգում
Իմ Հայրենիք, քո ջերմ գրկում։

Մայր ես անուշ ու հարազատ
Եվ արև ես վառ ու անմար,
Ու մեզ համար քո գրկից զատ
Չկա ուրիշ հարազատ վայր։









ԳՐԻԳՈՐ ՋԱՆԻԿՅԱՆ
(Երևանի Րաֆֆու անվան
դպրոցի աշակերտ)

# ԻՄ ՄԱՅՐԻԿԸ ԼԱՎԱՑԵԼ Է

Մայրիկս համարյա թե լավացել է։ Շուտով նրան հիվանդանոցից դուրս պիտի գրեն։ Դրա համար ես նրա մոտ գնում եմ բարձր սուլելով ու զվարթ ճռճռելով կերակրի զամբյուղը։ Հիվանդանոցի մոտ ես այլևս չեմ սուլում։ Ինձ թվում է, թե մայրիկս նորից վատացել է։ Ես երկար սպասում եմ, մինչև դռան մոտ նստող հերթապահը աչքերը բացի։

— Կարելի՞ է գնալ մայրիկիս մոտ,— կամաց հարցնում եմ ես։

Նա հորանջում է ու նայում երեսիս։

— Ո՞վ է քո մայրիկը։

— Նա՛ էլի, որ կարճ կտրած մազեր ունի,— ես զարմանում եմ, որ նա մայրիկիս չի ճանաչում։

— Հը՛մ,— ասում է հերթապահն ու հանկարծ բարձր ավելացնում,— ո՛չ, չի կարելի գնալ։

— Հապա ինչպե՞ս։ Չէ՞ որ նա արդեն առողջացել է։ Ես ամեն օր կերակուր եմ բերում։

— Դու համառ տղա՛ ես,— հորանջում է հերթապահը,— գնա, գնա այգում սպասիր, ես քեզ կկանչեմ։

Ես թթված մնում եմ հիվանդանոցի այգին։ Ծառերը կամաց խշշում են, կանաչ խոտը փարթամ աճել է։ Քիչ է մնում մոռանամ մայրիկիս ու անփույթ թավալվեմ նրանց մեջ։ Բայց ես այլևս փոքր չեմ, ամեն օր հիվանդ մայրիկիս կերակուր եմ բերում։ Հանկարծ լացի ձայն եմ լսում։ Զարմացած նայում եմ շուրջս։

Ծառի հետևը նստել է մի աղջիկ ու լաց է լինում։ Նա շատ փոքրիկ է՝ Անահիտի, Թագուշիկի նման։ Միայն նրանցից ավելի սիրուն է։ Ես մոտենում եմ։

— Ինչո՞ւ ես լալիս,— հարցնում եմ։

Նա արցունքից թրջված աչքերը հառում է դեմքիս ու ասում.

— Քո ի՞նչ գործն է։

— Ինչպե՞ս թե իմ ինչ գործն է։ Ինձ թվաց, թե իմ շունը քեզ կծել է։ Նա ամեն օր այստեղ է լինում,— հնարում եմ ես։

— Ոչ մի շուն էլ չի կծել։ Մայրիկս հիվանդ է, դրա համար էլ լաց եմ լինում։

Ու նորից սկսում է լաց լինել։ Նա շատ սիրուն աղջիկ է։ Ես նայում եմ նրան ու մեղքս գալիս է։

— Իզուր էլ լաց ես լինում,— հանկարծ ծիծաղում եմ ես,— այ, իմ մայրիկն էլ հիվանդ է, բայց ես լաց չեմ լինում։— Ճիշտ չեմ ասում։ Ես շատ եմ մտածում մայրիկիս մասին։ Երբեմն երազում էլ եմ տեսնում։ Բայց դե, հարկավոր է այնպես անել, որ նա լաց չլինի։

— Իսկ քո մայրիկը վաղո՞ւց է հիվանդ,— կասկածանքով աչքերն ինձ է հառում նա։

— Վաղո՛ւց,— պատասխանում եմ ես ուրախացած, որ իմ խոսքերը մխիթարում են նրան։

— Ուրեմն դու վատ տղա ես, որ մայրիկիդ մասին չես մտածում,— ասում ու վեր է կենում տեղից։

— Վա՜յ, այս ո՞ւմ զամբյուղն է,— հանկարծ բարձր ասում է քիչ առաջ լաց եղող աղջիկը։

*Ես հիշում եմ, որ գամբյուղս մոռացել եմ խոտերի մեջ:*

*— Իմն է,— պատասխանում եմ ես:*

*— Ի՞նչ փնթի տղա ես,— ծիծաղում է նա դեռ չչորացած արցունքների միջից:— Ամբողջ կերակուրը թափել ես:*

*Իսկապես, ճաշի ամանը շուռ է եկել ու կեղտոտել գամբյուղը: Ես ամոթից կարմրում եմ: Չգիտեմ ինչպես մաքրեմ: Իսկ նա կանգնել ու ժպտացող աչքերով կարծես ծաղրում է ինձ: Հետո պպզում է ու թղթով սրբում գամբյուղը: Ես ավելի եմ շփոթվում: Եվ հանկարծ հարցնում եմ.*

*— Անունդ ի՞նչ է:*

*— Անահիտ,— պատասխանում է նա,— իսկ քո՞նը:*

*— Լևոն:*

*Նա կարծես ժպտում է ու շարունակում մաքրել գամբյուղը: Ես առաջվա պես չեմ ամաչում:*

*Հաջորդ օրը առավոտյան ես նորից գնում եմ հիվանդանոց: Ուզում եմ անպայման տեսնել Անահիտին:*

*— Անահիտ,— գոռում եմ ես:*

*Նա նայում է ինձ ու ժպտում:*

*— Բարի լույս, Լևոն:*

*Դեռ չի մոռացել իմ անունը: Ես ուրախացած ասում եմ.*

*— Շտապենք, թե չէ ուտելիք բերողները կշտանան, մեզ հերթ չի հասնի: Մենք վազում ենք: Անահիտը շատ ծիծաղելի է վազում: Բայց ես չեմ ծիծաղում, ընդհակառակը, թողնում եմ, որ նա ինձանից առաջ անցնի: Մենք հևիհև մոտենում ենք հիվանդանոցին:*

*— Ինչպե՞ս է Անահիտի մայրիկը,— հարցնում եմ դռան առջև նստող հերթապահին ու նոր միայն ավելացնում,— իսկ իմը՞:*

*Հերթապահը ծաղրական հայացքը հառում է վրաս ու մեր բերածները ներս տանում: Քիչ հետո վերադառնում է:*

*— Քո մայրիկը առողջացել է, իսկ Անահիտինը՝ դեռ ոչ,— ասում է նա: Հետո մոտենում է ու սիրալիր խոսքեր շշնջալով շոյում Անահիտի ոսկեգույն մազերը:*

*Ես ուրախությունից թռչկոտում եմ ու քիչ է մնում վազեմ տուն: Մայրիկս առ-*



ԱՆԱՀԻՏ ՃՇՄԱՐԻՏՅԱՆ
(Ստեփանավանի շրջան, գյուղ Գյառ-Գյառ, 2-րդ դաս. աշակերտուհի)



Մեր գյուղի դպրոցը

դեն առողջացել է։ Բայց հանկարծ հիշում եմ Անահիտին։ Նա տխուր կանգնել է պատուհանների մոտ։

— Անահիտ, կամաց ասում եմ ես։

Անահիտը նայում է ինձ։ Ես ամաչում եմ նրա հայացքից ու կախում գլուխս։ Իմ մայրիկը լավացել է, իսկ Անահիտինը՝ ոչ։ Ես հիշում եմ, թե ինչպես հերթապահը սիրալիր խոսքեր շշնջաց ու շոյեց Անահիտի մազերը։ Նա իմ մազերն էլ էր այդպես շոյում, երբ մայրիկս դեռ չէր լավացել։ Այ, եթե իմ մայրիկը հիվանդ չլիներ, ես շատ կուզեի, որ առաջ Անահիտի մայրիկը լավանար։ Ես աչքի տակով նայում եմ Անահիտին։ Նա տխուր կանգնած է ու քիչ է մնում լաց լինի։

— Անահիտ,— ինքս ինձնից քաշվելով ասում եմ ես,— գուցե քո մայրիկն էլ է լավացել և հերթապահը չգիտե։

— Իմ մայրիկը չի լավանալու, հեկեկում է նա ու ընկնում հիվանդանոցի առջև դրված նստարանին։

Ես նորից հիշում եմ հերթապահի տխուր հայացքը, Անահիտին սիրալիր խոսքեր շշնջացող շրթունքները։ Անահիտը բարձրաձայն լաց է լինում։ Ես շփոթված շուրջս եմ նայում ու ամոթից կարմրում եմ։ Չգիտեմ ինչ անեմ։ Իմ մայրիկը լավացել է։ Բայց ես քիչ է մնում նստեմ Անահիտի մոտ ու ինքս էլ նրա հետ լաց լինեմ։



ՀԱՍՄԻԿ ԳՐԻԳՈՐՅԱՆ
(Երևանի Մ. Աբեղյանի անվան դպրոցի 5-րդ դաս. աշակերտուհի)

## ՄԱՆՈՒՇԱԿ

Քնքուշ, կապույտ մանուշակ,
Կանաչ, սիրուն տերևով,
Դու ծաղկեցիր թփի տակ
Ու ժպտացիր մեզ սիրով։

Դու կարծեցիր, թե միայն
Ինքդ ես կապույտ աշխարհում
Բայց երբ աչքդ բացեցիր,
Շատ զարմացար, երբ տեսար
Քեզ պես կապույտ ու վճիտ
Մի երկինք կա վերևում։



ԱՐԱՄ ՄԱԶՄԱՆՅԱՆ
(Լենինականի Ջարենցի անվան միջն. դպրոցի 7-րդ դաս. աշակերտ)

## ԱՐԱԳԱԾԻՆ

Երբ նայում եմ քո այդ շքեղ,
Կապուտաչյա լճակներին,
Երբ նայում եմ քո այդ բյուրեղ,
Ձյունապսակ գագաթներին,
Երբ նայում եմ գմրուխտաշող,
Քո լանջերին ծլած-ծաղկած,
Սիրտս է լցվում ծով բերկրանքով,
Հայրենի լեռ իմ Արագած։

Ցուլ (քանդակ)
ՍՈՍ ՂԱԶԱՐՅԱՆ
(Երևանի Շահումյանի անվան դպրոցի 2-րդ դաս. աշակերտ)







ԷՄՄԱ ԷԼԲԱԿՅԱՆ
(Լենինականի № 5 դպրոցի աշակերտուհի)

## ՓԱԹԻԼՆԵՐԻ ՏԱԿ

Փաթիլները իջնում ու դաշտերը պերճ
Ճերմակ են ներկում.
Ես վազվզում եմ պաղ ձյուների մեջ
Եվ ուրախ երգում։

Ինչ փույթ. որ ցուրտ է. ու դաշտերում պաղ
Քամին է խաղում։
Սիրում եմ անչափ ձմեռը խաղաղ
Հայրենի գյուղում։



ՏԻԳՐԱՆ ԳԱՄԱՂԵԼՅԱՆ
(Երևանի 51-րդ դպրոցի
աշակերտ)

## ԱՄԲԱՐՁԻՉ ՀՍԿԱՆ

Իր հաղթ հասակով կանգնել է ահա,
Զուգունե հսկա ամբարձիչը նոր.
Բարձունքի տենչով նայում են նրան
Հիմքի մոտ կիտված քարերը բոլոր:

Նայում են նրան հայացքներ բազում,
Աչքեր՝ շաղախված գույներով գարնան,
Ժպտում է նրան երկինքը լազուր.
Հազար անուրջներ կյանք պիտի դառնան:

Եվ նրա ամուր, պողպատե գրկում
Տուֆաքարն ասես առնում է թևեր.
Հյուսվում է հսկա շենքը վարդագույն
Ու աստղերի տակ կանգնում աներեր:





ԱՐՍԵՆ ԲԱԲԱՅԱՆ
(Երևանի 29-րդ դպրոցի
8-րդ դաս. աշակերտ)

## ԿԱՏՈՒԿՆ ՈՒ ԳՈՂ ՄԿՆԵՐԸ

Երբ մառանը
Ցորեն բերին,
Լուրը հասավ
Գող մկներին:

Գիշերն եկան
Շարան-շարան,
Ողջ ցորենը
Կերան տարան:

Բայց և կատուն
Մառան եկավ
Ու մկների
Հետքը գտավ:

Դարան մտավ
Կես գիշերին,
Մեկ-մեկ խեղդեց
Գող մկներին:



Մեխակներ

ՍԵՐԺԻԿ ԹՈՎՄԱՍՅԱՆ
(Աշտարակի Պռոշյանի
անվան դպրոցի 4-րդ
դասարանի աշակերտ)





ՀՌԻՓՍԻԿ ՄՈՒՐԱԴՅԱՆ
(Երևանի № 39 դպրոցի 4-րդ դասարանի
աշակերտուհի)
Սասունցի Դավիթ (քանդակ)



ԾՈՎԻՆԱՐ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
(Երևանի Կրուպսկայայի անվան
դպրոցի 8-րդ դաս.
աշակերտուհի)

# ԽՈԼ ԱԼԻՔՆԵՐԸ

Խոլ ալիքները վազում են առաջ,
Բախվում ծովափնյա քարի կույտերին,
Զեփյուռը անտես, ասես, թև առած
Շոյում է մեղմիկ գիսակները իմ:

Շուրջս ծաղիկներ քնքուշ, նորաբաց
Ու թավշյա խոտեր իմ ոտքի տակին,
Կանաչ նոճիներ տողանի ելած,
Ասես ուզում են հասնել երկնքին:

Ու թռչուններն են ճռվողում անվերջ,
Ճախրում են անհաս, կապույտ երկնքում,
Արփին մեկնում է իր շողերը պերճ,
Ասես իմ հոգին գերել է ուզում:

Բայց արևն հայոց թովել է արդեն,
Գերել է արդեն հոգին իմ մանուկ,
Լեռներից փախած հովիկը թեթև
Շոյել է քնքուշ գիսակներս մութ:

Ժպտացել է ինձ նաիրյան բարդին
Ու մանուշակը թփի տակ բացված,
Հմայել են ինձ հայոց լեռների
Վեհ կատարները երկինք խոյացած:

# ՄԵՂԵԴԻ

Allegretto cantabile

espress.



ՄԱՐՏԻԿ ԲԱՋԱՐՅԱՆ
(Երևանի Չայկովսկու անվան դպրոցի 7-րդ դասարանի աշակերտ)



Գյուղական տուն



ՍՈՒՍԱՆՆԱ ՕՀԱՆՅԱՆ
(Իջևանի շրջանի Աչաջուրի միջնակարգ դպրոցի 4-րդ դաս. աշակերտուհի)

Տրվում է ձրի՝ «Պիոների» 11-րդ համարի հետ որպես հոբելյանական նվեր: